# ԱՄԱՌԸ ՔԱՍԱԽԻ ՁՈՐՈՒՄ



Հայաստանի կոմերիտմիության 60-ամյակի անվան աշխատանքի և հանգստի ճամբարը գտնվում էր Աշտարակի շրջանի Կարբի գյուղում, որտեղ Երևանի Կրուպսկայայի անվան դպրոցի բարձր դասարանցիների հետ մեկտեղ այս ամառ աշխատում և հանգստանում էին Լիտվայի Ռադվիլիշկասի շրջանի դպրոցականները: Աշխատում էին սիրով: Սովխոզի ղեկավարությունն էլ իր հերթին ամեն ինչ անում էր պարտքի տակ չմնալու համար: Ջոկատին մատակարարում էր թարմ միս, բանջարեղեն, կաթնեղեն, մրգեր, էքսկուրսիաների համար ավտոբուսներ էր տրամադրում: Աշակերտները այցելեցին Սարդարապատ, Բյուրական, Օշական, Ամբերդ, Գառնի և Գեղարդ...

— Երբ առաջին անգամ եկա Հայաստան, և օդանավակայանից մեքենայով գալիս էինք Կարբի, ամեն ինչ այնքան անսովոր էր, որ ինձ թվաց, թե նստած եմ կինոդահլիճում, և էկրանից դեպի ինձ են լո՛ղում բարձրաբերձ լեռներ, քարե տներ ու եկեղեցիներ... — ասաց լիտվացի դպրոցականների ղեկավար՝ Ռիչարդ Յոնայտիսը, և նրա սաները, որ առաջին անգամն էին Հայաստանում, գլխով արեցին:

Աշակերտները կոլտնտեսականների հետ ծիրան էին հավաքում, օգնում Հայրենական պատերազմում զոհված կարբեցիների հիշատակին նվիրված հուշարձանի կառուցման աշխատանքներին: Միայն Կրուպսկայայի անվան դպրոցի աշակերտ Արարատ Սարգսյանը մի քանի օրում հավաքեց 160 արկղ ծիրան: Եթե նկատի ունենանք, որ ճամբարականները օրական աշխատում էին չորս ժամ, դա շատ բարձր ցուցանիշ է:

— Ձեր ծիրանի պես համեղ միրգ չեմ կերել: Գառնին ու Գեղարդը անզուգական էին: Բայց ամենահաճելին հայ տղաների ու աղջիկների հետ հաստատած ծանոթությունն է,— ասաց Աստա անունով մի աղջիկ, որ այստեղ սովորել ու պարում էր հայկական պարերը հայ աղջիկներից ոչ վատ: Իսկ լիտվական «Կկվի երգը» լիտվացի դպրոցականներից սովորել ու երգում էին ոչ միայն ճամբարականները, այլև ողջ գյուղը: Երգը, պարն ու ծիծաղը անպակաս էին Քասախի գեղատեսիլ ձորից, որը աշակերտների ամենասիրելի հանգստավայրն էր: Աշխատանքից հետո հաճելի էր մտնել գետի պաղ ջրի մեջ, հիանալ ջրվեժի գեղեցկությամբ ու մի քիչ էլ չարաճճիություններ անել՝ ջուր նետել իրար վրա:

Ճամբարում անցկացվեց լիտվական հանրապետությանը նվիրված օր: Ընդհանրապես բոլոր օրերն էլ կարելի էր երկու հանրապետությունների բարեկամությանը նվիրված անվանել: Այդ օրը մյուսներից տարբերվեց նրանով, որ ամենօրյա երգ ու պարից, ասմունքից, սպորտային միջոցառումներից բացի, ճամբարականները ճաշակեցին լիտվական ճաշատեսակներ:

*ՍՏԵՓԱՆ ԶԱՔԱՐՅԱՆ*

Աշխեն Աբազյանի ինքնակենսագրական «Ես հավարած եմ» վիպակում հնարովի ոչինչ չկա: Կարդացեք և կիմանաք, թե ինչպե՞ս եղավ, որ հերոսուհին, դպրոցն հաջողությամբ ավարտելուց հետո, նույնքան հաջողությամբ ընդունելության քննություններ հանձնեց Երևանի պոլիտեխնիկական ինստիտուտում, բայց ուսումն այնտեղ չշարունակեց, վերադարձավ գյուղ, պապապ չմնալու համար նրան աշխատանքի ուղարկեցին սովխոզի հավաբուծական ֆերմա, կամ ինչպես վիպակի վերնագիրն է հուշում՝ դարձրին հավարած: Առավոտից երեկո, հրացանը ձեռքին պաշտպանում էր հավերին ուրուրներից, որոնք անընդհատ գրոհում էին հավերի վրա և առատ ավար տանում: Իր այդ անհանգիստ, արկածներով լի աշխատանքին զուգահեռ, նա պատրաստվում էր քննություն հանձնել այժմ էլ մի այլ՝ իր նախասիրած բարձրագույն հաստատությունում... Հետո՞. կարդացեք վիպակը և կիմանաք:

ԱՇԽԵՆ ԱԲԱԶՅԱՆ

# Ես հավարած եմ

## 1.

Տրաքվում եմ, սիրտս պայթում է: Մեր հարևան Սոնան ու իմ քույր Արաքսը հերիք են, որ գլուխս առնեմ կորչեմ: Բայց ո՞ւր: Չգիտեմ:

— Աղջի Արո՞,— հենց պատշգամբում երևում եմ, Սոնան պատուհանից գլուխը հանում է,— ուրիշները հինգվեց տարում են ինստիտուտ ավարտում, դու երկու ամսում ավարտեցի՞ր...

Ասում է ու ճեճգորեն ճանապարհի կողմը նայում, տեսնի անցնողներ կա՞ն, լսողներ կա՞ն: Իսկ անցնողները, որքան էլ շտապելիս լինեն, իրենց պարտքըն են համարում շրջվել ու կշտամբանքով գլուխները օրորելով կանգնել:

Զայրույթից աչքերիս առաջը մթնում է, մի կերպ համբերում եմ, ուզում եմ արհամարհել, չլսելու տալ, կամ այնպիսի պատասխան գտնել, որ միանգամից փակվի նրա բերանը: Մտածում եմ, մտածում, բայց Սոնայի հախից գալ չեմ կարողանում:

— Աղջի Արո՞,-- ո՞նց էլ նկատեց: Դիտավորյալ շուտ էի վեր կացել, որ շուտ լվացվեմ, Սոնայի աչքին չերևամ:

— Դու գիշերը չե՞ս քնել,— փշշացի ես:

— Չէ, իմ սիրունիկ, իմ ուսումնական, իմ քաղաքացի ինժեներ բալա, Արո ջան,— շրթունքները ծռմռելով, վրաս երգ կապելով, տնազ անելով ծաղրում է:

— Ես Արո չեմ,— պարտված պատասխանում եմ,— Արուսյակ եմ, չըփորձես անունս աղավաղել:

— Հա՞,— նորից է շրթունքները ծռմռում,— քանի դպրոցական էիր, Արո էիր, ուսանող դարձար, անունդ երկարացրի՞ր... Չգիտեի, կներես, ընրանից հետո...





— Սրանից հետո էլ պատուհանդ չբացես, մեր տան կողմ չնայես, ոչ դու ես մեզ կարոտել, ոչ մենք քեզ:

— Լեզուդ էդքան շատ քաղաքում երկարե՞ց:

***

Իմ քույր Արաքսը Սոնայից պակաս չարը չի: Հենց դպրոցից վերադառնում է, պայուսակը շպրտում է ու.

— Էսօր բոլոր դասամիջոցներին քեզանից էին խոսում,— ասում է,— և գիտե՞ս ընկեր Ֆեդյանն ինչ ասաց...

— Ոչ գիտեմ, ոչ էլ ուզում եմ լսել: Ձայնդ կտրիր, դասերդ սովորիր:

— Պա՛հ, պա՛հ, պա՛հ... դու էլ գեղազանցիկ էիր, ի՞նչ դարձար՝ երեք ամսվա ուսանողուհի...

Հարձակվում եմ Արաքսի վրա: Նա ճարպկորեն դուրս է պրծնում, ես՝ ետևից: Այգում, ծառերի արանքով, կանաչիների ու լոբու թփերը կոխոտելով, ծվալով ու ծղրտալով, ճչալով ու գոռալով պտտվում ենք: Ձեռքս ընկած ճյուղերը, քարերն ու ճմերը շպրտում եմ: Մեր աղմուկի վրա պատուհանում հայտնվում է Սոնայի գլուխը:

— Արուսյա՛կ,— չարախնդորեն կանչում է,— ասենք թե Արաքսը գյուղից դուրս եկած չկա, դեռ վայրենի է, բա քեզ սազո՞ւմ է այդ վայրենու հետ գըլուխ դնել: Մայրաքաղաքում կրթված, կուլտուրական կյանք տեսած աղջիկ ես...

Հաջորդ բառերը չեմ լսում: Ականջներս փակում եմ, նստում լոբու խիտ թփերի մեջ ու հեկեկում: Ո՜նց եմ լալիս... Խեղդվում եմ, մղկտում, սիրտս տեղահան է լինում, երեսնիվայր փըռվում եմ գետնին, դեմքս թաղում չորացած լոբիների խշշոցի մեջ և իմ կարծիքով իմ սև օրը ողբում:

— Արո, քույրիկ ջան, ցավդ տանեմ, էլ չեմ անի, էս մի բաժակ ջուրը խըմիր,— Արաքսը զգացված ու խղճահարությամբ, արցունքից շաղված աչքերով նայում է ինձ, բաժակը մոտեցնում շուրթերիս:

Բաժակը վերցնում եմ ու ջուրը շըպըրտում Արաքսի երեսին:

— Կորի՛ր,— գոռում եմ,— թե չէ գլուխդ փայտով կջարդեմ:

— Ջարդիր, միայն թե ներիր: Ես հիմար եմ, բոլորը գիտեն: Դու խելոք ես, դա էլ բոլորը գիտեն:՛ Եվ հիմա ուզում եմ, որ իմ հիմար գլուխը քո խելոք ձեռքով ջարդես:

Կողքս նստում է, հպվում ուսիս: Նրա մտերիմ մոտիկությունից թուլություն եմ զգում, ինչպես մանուկ օրերին, ինչպես անցյալ ու նախանցյալ տարիներին, երբ տանը երկուսով էինք մնում, կամ դաշտերն էինք գնում ծաղիկ քաղելու և վազելուց ու թափառելուց հոգնած նստում էինք կանաչներին այսպես կողք կողքի, ուս ուսի հըպված, հարազատ, մտերիմ, բաժանում քաղած ծաղիկները, խինդ, հոգնություն, չարչարանք:

***

Արաքսը ինձնից մեկ տարով է փոքր: Մենք ինն երեխա ենք. չորս քույր և հինգ եղբայր: Մեր հայրը հովիվ է սարերում: Մայրիկը՝ նրանից անբաժան: Տան ու երեխաների հոգսը տատս է քաշել: Հիմա տատիկս չկա, երկու տարի առաջ մահացավ: Մեզ հետևում է մեծ քույրս, որը հաճախ տրտնջում է ու զայրանում մորս վրա.

—Տան անկյուններն երեխաներով լցրել ես, գնացել սարերում քեզ հովին ես տալիս:

Իսկ տատս, ընդհակառակը, ուրախ էր: Հայրս իր միամոր տղան էր, ասում էր՝ որդիս քույր չունի, եղբայր չու-



նի թիկունքում կանգնած, գոնե երեխաներ շատ ծնվեն:

— Ինչից էլ շա՞տ ես ուզում, Թագուշ ձալո,— մի օր հարցրեց մեր հարևան Սիրանը:

— Բա ո՞նց... Գոնե տասը լինեն հինգ քույր, հինգ եղբայր:

— Հարսդ պանրի մոթալների ու յուղի տկերի հետ տարեկան մի երեխա է սարից ուղարկում, քեզ հերի՞ք չի:

— Չէ՛,— հաստատուն ու աներեր պատասխանում էր տատս: Իսկ երբ մահանում էր, մայրս խոնավ աչքերով, աղերսագին նայելով տատիս, հարցրեց.

— Ինձանից հո նեղացած չե՞ս գընում, նանի ջան: Կարող ա ջահել ժամանակ առանց հասկանալու քեզ դիպչողական խոսք ասած լինեմ: Խնդրում եմ ներես, քո ջահելն եմ:

Տատս աչքը փակ, կարծես կարոտով ու թախիծով հիշեցրեց.

— Նեղացած եմ, հարս ջան, շատ եմ նեղացած, որ երեխաներիս թիվը կենտ թողիր, աչքս տասին չտեսավ:

Եվ այսպես, իմ Թագուշ տատը մահացավ՝ ծնվելիք տասներորդին չտեսած, որը նրա կարծիքով անպայման աղջիկ էր լինելու: Իսկ հիմա ես զայրանում եմ և՛ տատիս, և՛ մորս վրա, թե ինչու են ինձ պահել, և ուրախանում եմ, որ տասներորդն այդպես էլ չծնվեց, թե չէ ինձ պես դժբախտ կլիներ:

Ես տան յոթերորդ երեխան եմ: Ինձանից հետո Արաքսն է, ապա՝ Վաչոն: Մյուս վեցը ամուսնացել, տնավորվել, իրենց համար խաղաղ ապրում են: Երբ ամառները հայրս ու մայրս իրենց բազմաթիվ թոռնիկներին առած սարերն են գնում, քույրերս ու եղբայրներս իրենց պարտքն են համարում զբաղվել մեր տան, այգու, տանը մնացած երեխաների հոգսերով: Բոլորը իմ նկատ-

մամբ արտակարգ քնքուշ էին. հենց առաջին դասարանից լավ եմ սովորել, դարձել ուսուցիչների ու տնեցիների սիրելին: Երբ ինստիտուտ ընդունվեցի, մերոնք հավաքվեցին, ուրախության սեղան բացեցին, շնորհավորեցին, ամեն մեկը մի բան նվիրեց, խմբով էլ տաքան ավտոբուսի կանգառ՝ Երևան ճանապարհելու: Ինչքան ասես խորհուրդներ ու խրատներ տվեցին:

— Դու մեզ սաղ-սաղ թաղեցիր,— ասաց մեծ քույրս, երբ երեք ամիս անց ճամպրուկս շալակած վերադարձա:

— Երեխաների համար օրինակ էիր դառել, քեզանով էինք պարծենում,— նրան լրացրեց մեծ եղբայրս,— ամբողջ դասարանից միայն դու ընդունվեցիր: Ոտքս գետին չէր առնում, թռչում էի:

— Մեզ խայտառակեցիր,— նախատեցին մյուս քույրերս ու եղբայրներս,— մեր ամուսինների ու կանանց մոտ ամոթով մնացինք:

Նախատինքների ողջ բեռը անխոս տարա, որովհետև մեր ընտանիքում ընդունված չէ մեծին պատասխան վերադարձնել:

— Մեծի ասած, փոքրի՝ լսած,— միշտ խրատում էր տատս,— ի՞նչ կլինի, եթե իմ ասածը ձեր հայրը չլսի, ձեր հոր ասածը՝ ձեր մայրը: Ուրեմն մեր միասին ապրելը զուր է: Մեծը սխալ ու վնասակար բան չի ասի փոքրերին: Լավ լսեցեք:

Լավ լսեցինք և այդ լսելը մտավ մեր արյան մեջ ու հիմա թեև ներքուստ բողոքում էի, բայց իրավունք չունեի հակաճառելու, մեղավոր չէին իմ մեծերը, որ ուզում էին ես գրագետ մարդ դառնամ, որ եթե սովորեի, մեր ազգականների մեջ առաջին կրթված մարդը կլինեի: Հիշում եմ, դպրոցն ավարտելու հաջորդ օրը մերոնք խուքը մեկ արած հավաքվեցին մեծ եղբորս տանը:

— Քույրիկ ջան, մենք շնորհք չունեցանք բարձրագույն կրթություն ընտանելու: Մեկս տրակտորի պոչից բռնեց, մեկս՝ ավտոյի ղեկից, մյուսը ծխախոտի դաշտերը վազեց,— ասաց իմ մեծ եղբայր Վահանը,— մի խուրքով՝ ով ինչ դառնալու էր, դարձավ: Փա՛ռք աստծո, դժգոհ չենք: Երևի մեր ճակատին գրված էր, որ տրակտորիստ ու անասնապահ, այգեգործ ու դաշտավար դառնանք: Հիմա մենք՝ քո մեծերը, մեր մեծերի՝ այսինքն մեր հոր ու մոր հետ խորհուրդ ենք արել՝ քեզ ուղարկել բժշկական ինստիտուտ: Ո՞նց կլինի:

Ես բժշկուհի դառնալու մասին երբեք չէի մտածել ու հիմա շփոթվեցի:

— Նախ երեխայի միտքը իմանանք,— ասաց մեծ քույրս,— հետո խորհուրդ տանք,— ապա դարձավ ինձ,— դու ի՞նչ ես մտածում:

— Համալսարան եմ ուզում,— պատասխանեցի,— մաթեմատիկայի գծով:

— Հա՛, լավ ես անում,— Վահանը ժպտաց, մերոնց դեմքը բացվեց, աշխուժացան: Նրանք գիտեին իմ մոլեռանդ սերը մաթեմատիկայի նկատմամբ: Ծնողական ժողովների ժամանակ գովեստներ շատ էին լսել իմ մասին: Մեղայ չստացա, որովհետև կենսաբանությունից և աշխարհագրությունից չորս ունեի:

— Արուսյակը առանց մեղալի էլ կընդունվի,— սա և ուսուցիչներիս, և ինձ ճանաչողների հաստատուն կարծիքն էր:

Ես էլ հաստատեցի այդ կարծիքը՝ բարձր գնահատականներով ընդունվեցի պոլիտեխնիկական ինստիտուտ:

— Բա դու համալսարան ասացի՞ր,— մերոնք ապրեցին առաջին հիասթափությունը, երբ Երևանից վերադարձա:

Այո՛, ես համալսարանն էի ուզում,

ես չէի ուզում ինժեներ դառնալ: Ես ամոթից գնացի պոլիտեխնիկական ինստիտուտ: Երևանում բարեկամ չունեինք: Վահանի ընկեր Սամվելը իր քենի Քնարին ու ինձ տարավ իր բանակի ընկերոջ տուն: Մի անգամ էի Երևանը տեսել, սա եղավ երկու: Մեզ ընդունեցին, տեղավորեցին, հարցուփորձ արեցին:

— Բա դու որտե՞ղ ես ուզում գործերդ հանձնել,— դարձավ ինձ:

— Համալսարան,— կարմրելով պատասխանեցի,— մաթեմատիկայի ֆակուլտետ:

— Ի՛,— տեղից վեր թռավ Սամվելի ընկերոջ հարևանը, որ մինչ այդ լուռ լսում ու դիտում էր մեզ,— ուրեմն ռայոնում էդպես լավ մաթեմատիկա են սովորեցնո՞ւմ: Հլա, ատեստատդ տեսնեմ:

Դողդողալով ճամպրուկից հանեցի փաստաթղթերս, մեկնեցի նրան:

Նա երկար զննեց ատեստատս, կարծես կասկածում էր իսկության վրա, հետո համոզվելով, որ կեղծիք չկա, գլուխը բարձրացրեց, նայեց ինձ նույն զննող հայացքով, կարծես ստուգում էր նաև իմ իրական լինելը, հետո կրկին համոզվելով, որ ես նույնպես իրական եմ, հատ-հատ արտասանեց.

— Աղջիկ ջան, որ էդպես լավ մաթեմատիկա գիտես, գնա պոլիտեխնիկ ինստիտուտ: Պոլիտեխնիկում մասնագիտություն կսովորես, համալսարանում ի՞նչ ես դառնալու: Համ էլ չես կարող սովորել: Ձեր գյուղի դպրոցում ինչքան էլ լավ մաթեմատիկա սովորեցնեն, էլի համալսարանին ձեռք չի տա: Պոլիտեխնիկ ընդունվելուդ վրա նույնպես կասկածում եմ, բայց փորձիր:

— Փորձը փորձանք չէ,— ավելացրին Սամվելի ընկերոջ տնեցիները և այսպես ինձ շաղել-շփոթեցնելով, հաջորդ օրը ճամփեցին գործերս հանձնելու պոլիտեխնիկական ինստիտուտի լեռնամետալուրգիական ֆակուլտետ:

Արույակ աղջիկ, աստղագետ-մաթեմատիկոս էիր ուզում դառնալ, էս ո՞նց պատահեց, երկար լեզուդ ինչո՞ւ պապանձվեց, ինչո՞ւ ձայն չհանեցիր: Բերանդ ջուր առար, ուր քշեցին՝ գնացիր: Ամեն քննության հետ եկան ինստիտուտ, ամեն քննությունից հետո զարմացան.

— Ախր, գյուղում ինչպե՞ս են այսքան լավ ֆիզիկա ու մաթեմատիկա սովորեցրել, որ քաղաքի երեխաները կտրվում են, սրա հեչ պետքը չի, նույնիսկ երեք չստացավ:

Ասացին՝ լեռնային ինժեներ ես դառնալու: Լեռներին ի՞նչ ինժեներ, զարմացա: Այսքան տարի լեռներում ապրել եմ, մեկին չեմ տեսել, որ ասի՝ ես այս լեռների ինժեներն եմ: Ուրեմն առաջինը ես պետք է լինե՞մ: Չէ՛, չեմ ուզում:

Զուգենալով երեք ամիս դասի գնացի: Ամեն առավոտ համալսարանի առջև պտտվում Լի, հետո դժկամ քայլերով ինստիտուտ գնում: Համալսարանի շենքը տեսնելիս՝ ոնց որ մեր սարերի առաջին ծաղիկները բացվեին առաջս, խելքս գնում էր, կարոտ ու երկյուղ էի զգում, նախանձով ու հիացմունքով նայում ներս մտնողներին:

Նախատում էի ինքս ինձ՝ քո փոխարեն մի կարգին մարդ կընդունվեր այդ ինստիտուտը, կարգին կուրախանար, կարգին դասերի կնստեր, կարգին կսովորեր ու կարգին ինժեներ կդառնար, լեռներն էլ կգնար, ձորերն էլ:

Մի օր էլ վեր կացա ու հայդե՝ մեր գյուղը: Մտածեցի, թե գյուղում ինձ կհասկանան, վերջիվերջո մերոնք են, ինձ ճանաչում են, կարդարացնեն վարմունքս: Բայց ինձ ուրախ, զվարթ, կա-



տակներով ու ժպիտներով ճանապարհորդները մթնեցին:

— Ինչո՞ւ սևով սուգ մտաք,— հարցրի:

— Իսկ ինչներիս վրա ուրախանա՞նք,— պատասխանեցին,— գյուղի մեջ մի մատ մեղր դարձրիր:

— Բա որ ինձ դուր չէր գալիս ինժեներ դառնալը, ի՞նչ անեի:

— Էշին նստելը մի ամբ է, իջնելը՝ երկու: Որ նստել էիր, չպետք է իջնեիր:

Չիջնել չէի կարող: Ոչ ոք չի ուզում գոնե մի վայրկյան իմ մաշկի մեջ մըտնել ու զգալ իմ վիճակը: Ոչ ոք: Ոչ հարազատ, ոչ ընկեր, ոչ ուսուցիչ ու հարևան: Խոսքերը մեկ արած նույն բառերն են կրկնում՝ ինչո՞ւ ինստիտուտը թողեցիր, հիմա ի՞նչ ես անելու:

— Կպատրաստվեմ, եկող տարի կընդնամ համալսարան,— պատասխանում էի, բայց նրանց չէր գոհացնում իմ պատասխանը:

— Երկաթը տաք-տաք կծեծեն,— ասաց հայրս,— այս տարի որ չկարողացար, եկող տարուց ձեռքերդ լվա:

Իսկ վերադառնալուս տասներկուերորդ օրը իմ մեծ եղբայր Վահանը թեքվեց մեր տուն և կարծես ի միջի այլոց, բայց շատ խիստ ասաց.

— Վաղվանից հավաքյահ ես: Առավոտյան Վարսենիկը կգա, քեզ կվերցնի, կգնաք: Թոչնանոցի տեղը գիտե՞ս,— ես սսկվել, չէի պատասխանում, նրա խոսքերը մշուշի միջից էին գալիս,— չգիտե՞ս, կիմանաս: Գնա բմբուլ կուլ տուր, որ սովորելու գինը չգիտես:

— Չէ՛, ա՛յ բալա, Աբգարենց ցեղից գրագետ մարդ չի դուրս գալ: Ո՞ւմ էր քաշելու: Պապը չոբան, հերը չոբան: Սրա տեղն էլ է ֆերման:

Դա էլ մայրս էր:

*(շարունակելի)*

ՊԱՏՎԱԿԱՆ ԽԱՉԱՏՐՅԱՆ

# Դավթի թոռն եմ

Ինձ այս աշխարհում
Ոչ ոք չի հաղթի,
Ես անվախ թոռն եմ
Սասունցի Դավթի,
Նրա պես ազնիվ,
Նրա պես բարի,
Նրա պես անմեղ,
Նրա պես արի։

Ես Դավթի թոռն եմ՝
Նրանից բարի,
Նրանից ազնիվ,
Նրանից արի։
Ինչ որ չի արել
Իմ պապը հսկա,
Ես պիտի անեմ
Արևս վկա։




Մեծատառ Ծ-ն ծալապատիկ
Տխուր նստեց տողի ուսին.
— Ընկերներ եմ ուզում,— ասաց,—
Որ աշխատենք մենք միասին։

Թե չէ մենակ ի՞նչ անեմ ես,
Ինչքա՞ն նստեմ այսպես անբան,
Ինչպե՞ս դառնամ ծով ու ծածան,
Ծիլ ու ծաղիկ կամ ծիածան։



Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

# Մեր գյուղի երկինքը

Էլ գյուղն աստծուց անձրև չի խնդրում,
Իմ պապն է հիմա անձրևը բերում,
Հենց որ սեղմում է կոճակը կապույտ,
Իսկույն մարում է ծարավը հողի:
Երգում է ջուրը, տեղում է առատ,
Ցրում արտերի ամառվա տապը,
Եվ արտերի հետ ժպտում է բարի
Մեր գյուղի երկինք՝ իմ անձրև պապը:

# Ծիտը ասաց առյուծին

— Ինչ առյուծ ես, կամ ինչ արքա,
Երբ անտառում այսքան ցավ կա:
Դու կարգվել ես մեզ տիրակալ,
Որ գործի մեջ լինես արդար,
Որ տարբերես չարն ու բարին,
Սաստես անսանձ մեղավորին,
Բայց օրենքը դու ես խախտում,
Եվ քեզ արդեն չենք հավատում.
Այդ դու կերար անցած օրը
Խեղճ շլդիկի հիվանդ մորը,
Բա էն անմեղ մատղաշ գառը...
Բկիդ կանգներ մեծ պատառը:
Եվ հիմա էլ դունչդ սրել,
Թաթդ ի՞նձ ես դու երկարել,
Ախորժակդ զուր է, վակայն,
Իմն է, իմը, երկինքն համայն,
Թեև քո դեմ փոքրիկ ծիտ եմ,
Բայց, իմացի՛ր, թռչել գիտեմ:



# ԶՐՈՒՅՑՆԵՐ ԼԵԶՎԻ ՄԱՍԻՆ

*ԼԵՎՈՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ*
*բանասիրության դոկտոր*

## 48. ՀԱՐԱԴԻՐՆԵՐԻ ԵՎ ԱՅՆ ՄԱՍԻՆ, ԹԵ ԴՐԱՆՔ ԻՆՉՔԱՆ ԵՆ ԲՆՈՐՈՇ ՀԱՅՈՑ ԼԵԶՎԻՆ

Վերցնում ես որևէ գոյական, կողքին դնում մի բայ և, խնդրեմ, հարադիր բայը պատրաստ է՝ վառ, տպավորիչ, պատկերավոր: Հայոց լեզուն դրա հընարավորությունը տալիս է արտասովոր շռայլությամբ: Ահա, օրինակ, **ձեռք** բառը՝ ձեռք բերել, ձեռքից գնալ, ձեռ առնել, ձեռ քաշել, ձեռք տալ, **գլուխ** բառը՝ գլուխ դնել, գլուխ բերել, գլուխ ծռել, գլուխ պահել, գլուխ հանել, գլխի ընկնել, գլուխ չունենալ, գլխից ձեռ քաշել, **աչք** բառը՝ աչքով տալ, աչքի ընկնել, աչքից ընկնել, աչք ածել, աչքը մտնել, աչքը ճամփին մնալ, աչքը ջուր կտրել, աչք տնկել և այլն, և այլն:

Կան նաև երկու բայից բաղկացած հարադրություններ: Դրանցից մեկն ուժեղացնում է մյուսին և գործողության պատկերը դառնում ավելի ցայտուն՝ պոկվել ընկնել, քշել տանել, մեռնել պրծնել, թողնել գնալ, խփել ջարդել, գնալ հասնել: Հարադրական բայերի ուրիշ, ոչ պակաս տպավորիչ ձևեր էլ կան՝ գիր ու ցան անել, հալ ու մաշ լինել, ահ ու սարսափ տարածել, տուն ու տեղ դնել, կեր ու խում անել, թուք ու մուր տալ, տակն ու վրա անել:

Հարադիր բայերի մեջ գոյական անունը չես էլ զգում: «Նա հո չի աշխատում, գլուխ է պահում» նախադասության մեջ մենք **գլուխ** բառը չենք զգում, պատկերացնում ենք ոչ թե մի մարդու, որ գլուխը բռնած պահում է, այլ այնպիսի մեկին, որ վատ է աշխատում, ուժերը խնայում է: «Ջուր են ծեծում» ասելիս մենք **ջուր** բառը չենք զգում, առավել ևս՝ չենք պատկերացնում ջուր ծեծող մարդկանց, այլ հասկանում ենք աննպատակ խոսակցություն: Այլաբերումն, այսպիսով, մի առանձին համ է տալիս հարադիր բայերին: Ասենք նաև, որ երկու-երեք բառից բաղկացած հարադիր բայը մենք ընկալում ենք իբրև մի բառ, ինչպես, օրինակ, «սպասելով աչքս ջուր կտրեց» նախադասության վերջին երեք բառն ընկալում ենք իբրև մեկ բառ:

Հարադիր բայերը գործողությունն արտահայտում են ավելի վառ, քան դրանց հոմանիշները: Համոզվենք օրինակներով՝ **«Նա այդ գործից գլուխ չի հանի»** և **«Նա այդ գործն անել չի կարող»**, **«Պետք է դրանից ձեռ քաշել»**

և «Պետք է դրանից հրաժարվել», «Աչքը ճամփին մնալ» և «Շատ երկար սպասել», «Մտքում դնել» և «Հաստատ որոշել», «Գլխի ընկնել» և «Կռահել»: Այս ամենից չպիտի եզրակացնել, թե հարադիր բայեր ունենալու դեպքում պետք է երես դարձնել դրանց հոմանիշներից: Այդպես դատել նշանակում է կոպիտ սխալ անել: Դրանցից ամեն մեկն իր ոճական գույնն ու արժեքն ունի, ուրեմն և՝ գործածության իր տեղը: Տեղ կա, ուր **կռահել**-ն է բռնում, տեղ կա՝ **գլխի ընկնել**-ը, տեղ կա, ուր **շփանալ** պիտի ասվի, տեղ կա՝ **երես առնել**: Լեզվական ճաշակն ու հոտառությունն են հուշում, թե խոսքի տարբեր ոճերի մեջ՝ գիտական, լրագրային, մտերմական, պաշտոնական և այլն, հոմանիշներից որը ընտրել: Սա չափազանց էական է: Բայց եթե մեր այս զրույցի նպատակն այն է, թե ինչ միջոցներ պիտի գործի դնել խոսքին կենդանի շունչ պարգևելու համար, ապա այստեղ առաջնության դափնին պատկանում է հարադիր բայերին: Հիրավի, եթե բայը գործողություն ցույց տվող խոսքի մասն է, շարժում, ընթացք ցույց տվող մասը, ապա զարմանալ կարելի է, թե որքա՜ն ուժ, եռանդ են թաքցնում այնքան պարզ ու հասարակ հարադիր բայերը նայերենում:

Վառ ու տպավորիչ են կրկնությամբ կազմվող ոչ միայն բայերը, այլև ածականներն ու գոյականները՝ շարան-շարան, փունջ-փունջ, շտապ-շտապ, ոլոր-մոլոր, առոք-փառոք, մանր-մունըր, բան-ման, փալաս-փուլուս և այլն: Սրանք լեզվաբանության մեջ կոչվում են կրկնավորներ:

Կրկնավորները մեր լեզուն դարձնում են ճկուն ու հարուստ: Դերանունները էլ կարող են կրկնավոր դառնալ՝ **ինձ ու ինձ** միտք եմ անում, թվականներն էլ՝ **մի-մի** գիրք վերցրեք: Կրկնավորների տարատեսակները հայերենում շատ-շատ են, դրանց թվին են պատկանում նաև այսպիսի ածականները՝ բեկբեկուն, սարսռուն, չարաչար, խառնիխուռն, թրթռուն, բայերը՝ ծլվլալ, գռռգռռալ, չեմուչում անել, թռվռալ, գոյականները՝ խորխորատ, ամանչաման, և այլն: Կրկնավորներ կան, որ ժամանակակից հայերեն են մուծվել գրաբարից (զանազան, խաժամուժ և այլն), բայց դրանց մեծագույն մասն ունի ժողովրդական ծագում, բարբառներից է սերում:

Պարտադիր չէ, որ դուք իմանաք, թե հարադրություններից ու կրկնավորներից որը որտեղից է ծագում, իմանաք դրանց ստեղծման օրինաչափությունները, դրանց դասակարգումն ըստ բազմաթիվ տարատեսակների: Բայց պարտադիր է գիտենալ, որ դրանք կազմում են մեր լեզվի թանկագին հարըստությունը, ունեն արտահայտչական անսպառ հնարավորություններ և շատ էլ սազում են հայերենին: Ու եթե մեր այս զրույցի խորհուրդն այն է, թե ինչ միջոցների պետք է դիմել խոսքի ոճը վառ ու կենդանի դարձնելու համար, ապա դրանց շարքում հարադիր բայերը, ինչպես նաև մյուս կարգի հարադրություններն ու կրկնավորները ներկայացնում են բացառիկ կարևորություն:

# ՊԱՏՄԱԿԱՆ ՀՈՒՇԱՐՁԱՆՆԵՐԻ

Հայ ժողովուրդն իր նախնիներից ժառանգել է տարբեր ժամանակներին վերաբերող պատմաճարտարապետական բազմաբնույթ հուշարձաններ: Նախասովետական շրջանում մեր ժողովրդի լավագույն զավակներ՝ Թումանյանն ու Իսահակյանը, Րաֆֆին ու Լեոն, Սարյանն ու Մյասնիկյանը և ուրիշներ ցավով նշել են հուշարձանների նկատմամբ գոյություն ունեցող համատարած անտարբերությունն ու խընամքի բացակայությունը, երազել այն ժամանակների մասին, երբ հնարավոր կդառնա դրանց պահպանությունը պետականորեն կազմակերպել: «Ժողովրդի նվիրական գանձերի պահպանությունն ու վերականգնումը հնարավոր կլինի... երբ ավելի պատրաստ, ավելի հասկացող, ուժ ունեցող մի սերունդ ծնվի հայերից»— ասել է պատմաբան Լեոն, ու այդ սերունդը ծնվեց 1920 թվականին:

Նորաստեղծ սովետական հանրապետությունում առաջին քայլերն արվեցին այդ ուղղությամբ, երբ դեռ բուժված չէին եղեռնի ու տեղահանության վերքերը, երբ տակավին իշխում էին ավերածությունը, սովը, համաճարակը: Ուղիղ 60 տարի առաջ՝ 1921 թ. սեպտեմբերին, ստեղծվեց հնությունների ու գեղարվեստական հուշարձանների պահպանության կոմիտե, որը գլխավորեց Մարտիրոս Սարյանը: Նպատակադրվելով լայնացնել կոմիտեի գործունեության ոլորտը, Հայաստանի ժողկոմխորհի 1923 թ. դեկտեմբերի 28-ի որոշմամբ ստեղծվեց մի նոր պետական մարմին՝ Հայաստանի հնությունների պահպանության կոմիտեն: Սովետահայ ճարտարապետության հիմնադիր Ալեքսանդր Թամանյանի գլխավորած այդ կոմիտեի կազմում էին Մարտիրոս Սարյանը, Թորոս Թորամանյանը, Աշխարհբեկ Քալանթարը և այն տարիների հայ մտավորականության այլ ներկայացուցիչներ:

Սկզբնավորվեց հուշարձանների գիտական հաշվառման, հնագիտական պեղումների, հնագիտական քարտեզներ կազմելու, հուշարձանների մասին հանրամատչելի գրականություն հրատարակելու, նրանց պահպանության և վերականգնման գործը: Դարեր շարունակ անխնամ և կիսավեր մեր կոթողները հետզհետե սկսեցին իրենց նախնական տեսքն ընդունել: Ավերակների խառնիճաղանջ կույտից կրկին հառնեց Գառնիի հիասքանչ տաճարը: Վերականգնվեցին Սանահինի, Հաղպատի, Կեչառիսի, Հաղարծինի վանքերը, Գոշավանքի, Հայրավանքի, Արուճի, Թալինի, Սիսավանի տաճարները, Սելիմի քարավանատունը և ուրիշ շուրջ 800 հուշարձաններ ու ճարտարապետական համալիրներ:

Հուշարձանների պահպանության և վերականգնման գործի նկատմամբ մեր կուսակցության և կառավարության բարձր հոգատարության վառ ապացույցներից մեկն էլ ՍՍՀՄ և բոլոր հանրապետությունների գերագույն սովետների կողմից ընդունված հատուկ օրենքներն են պատմության և կուլտուրայի հուշարձանների պահպանման և օգտագործման մասին: Այդ կապակցությամբ Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդին առընթեր պատմության և կուլտուրայի հուշարձանների պահպանության ու օգտագործման վարչությունը (պետ Գր. Հասրաթյան) տրամա-

# ՆՈՐ ՃԱԿԱՏԱԳԻՐԸ



դրվեցին ֆինանսական և նյութատեխնիկական ավելի մեծ հնարավորություններ:

Սակայն որքան էլ մեծ են պետության ջանքերն այս գործում, անհրաժեշտ է դրանց գումարել ժողովրդի, հասարակայնության ջանքերը: Ահա այդ նպատակով մեր երկրում ստեղծվեցին հուշարձանների պահպանության կամավոր ընկերություններ: Այդպիսի մի ընկերություն էլ 1964 թ. ստեղծվեց մեր հանրապետությունում, Մարտիրոս Սարյանի նախագահությամբ: Այժմ այն դարձել է հանրապետության առավել բազմանդամ հասարակական կազմակերպությունը, (ավելի քան 400 հազար անդամ, որի 80 տոկոսը դպրոցականներ են): Ընկերության միջոցներով 15-ից ավելի հուշարձաններ են վերականգնըվել և նորոգվել, այդ թվում Գնդեվանքի և Հայրավանքի համալիրները, Բըջնիի ս. Սարգիս, Արենիի ս. Աստվածածին, Ալագյազի Զորաց և ս. Կարապետ, Ներքին Թալինի ս. Քրիստափոր, Ոսկեպարի եկեղեցիները, Ամբերդի եկեղեցին և բաղնիքը և այլն: Գնահատելի են Աշտարակի շրջանի աշակերտության ջանքերը: Նրանք մաքրում և բարեկարգում են հուշարձանների շրջապատը, հետևում են, որ պատերին չգրոտեն, կազմակերպում են ցուցահանդեսներ, էքսկուրսիաներ դեպի շրջանի հուշարձանները: Ցանկալի է, որ Աշտարակի աշակերտության դրական օրինակին հետևեն մեր հանրապետության բոլոր դպրոցականները:



*ՎԱՐԱԶԴԱՏ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

*Պատմական հուշարձանների պահպանման հայկական ընկերության նախագահ*





Զորայր Խալափյան

# ՁԻՈՒ ՄԱՍԻՆ



Ձիու մասին պատմություններ շատ կան, մեկն էլ ես պատմեմ:

Տարիներ առաջ, ուսանող ընկերոջս հետ, ամառային արձակուրդներին մեկնեցինք մեր գյուղը: Ընկերս առաջին անգամ երկար ժամանակով գյուղում պիտի լիներ, մինչ այդ նա, ինչպես ասում են, գյուղը տեսել էր գնացքների ու ավտոմեքենաների պատուհաններից:

Նրա նախապատրաստությունները ու գնումները նայելով՝ ես խառն զգացմունքների մեջ էի. ալպինիստի կոշիկ գնեց, պարաններ, նույնիսկ մուրճ, ուսապարկ: Ես ասել էի, որ գյուղից ոչ հեռու գետակ կա, ձուկ կա, բայց նա այնքան կարթ ու թել, զանազան երկարության կարթաձողեր էր հավաքել, որ ես, ճիշտն ասած, մի քիչ խղճի խայթ էի զգում, հիշելով, թե ինչպես առավոտից իրիկուն գնում գալիս էինք գետակի երկայնքով ու հազիվ երկու-երեք ձկնիկ էինք կարողանում որսալ: Թե այդ կոշիկներով նա ինչ սարեր պիտի բարձրանար՝ ինձ համար անհասկանալի էր, որովհետև շատ սովորական կոշիկներով էլ կարելի էր բարձրանալ մեր բոլոր սարերը:

Գիշերային արշավների ու ճամփորդությունների համար նա առանձին գնումներ էր արել, անգամ մի մեծ դանակ ուներ՝ արջերի հետ մենամարտելիս, ով գիտի, գուցե պետք գար: Երկփողանի հրացան էր վերցրել, հարյուրից ավելի փամփուշտ, նա պատրաստվում էր մեր հանդի գայլերին այնպես դաս տալ, որ առհասարակ իր այցելությունից հետո որևէ գառ գայլի բաժին չդառնար:

Մի խոսքով՝ քաղաքացի տղա:

Երկու մեծ ճամպրուկ էր կապել, ահագին ծանր: Ծնողներն էլ իրենց կողմից այնքան ավելորդ բաներ էին խցկել, որ այդ ծանրոցները հազիվ էինք գետնից պոկում:

Գնացքից իջանք, մի բեռնատար մեզ հասցրեց մոտակա ավանը, այստեղից դեպի մեր գյուղը մեքենա հազիվ էր խաղում, ինչպես մերոնք էին ասում: Սպասելն իզուր էր, մութն էլ ընկնում էր: Սովորաբար ես այստեղից ոտքով էի գնում, բայց հիմա բեռը շատ էր:

Մեկ էլ տեսա՝ մեր համագյուղացի Համոն, իր միաձի սայլի մեջ, կեպին աչքերին, գլուխը կախ, ծխախոտը շրթերին, մտրակը ծնկներին, սայլի մեջ օրորվելով՝ հայտնվեց: Բնականաբար մենք այնպես բարևեցինք ու ողջագուրվեցինք, կարծես ես աշխարհի ծայրից էի գալիս. գյուղում այդպես է, տասն օր էլ բացակայես՝ վրա են ընկնում, ձեռքդ թափահարում, ուրախանում, իսկ գյուղում կարող է ամիսներով իրար երես չտեսնեն:

— Համո, մեզ կտանե՞ս:

— Վա՜, բա դա ասելու բա՞ն էր: Նստիր: Ուրեմն, պիտի թողնեմ այս դուզումը՞:

— «Դուզումը» ի՞նչ է,— հարցրեց ընկերս:

Ես բացատրեցի, նա, իհարկե, հիացավ, մտածելով, որ արդեն սկսվում է գյուղական էկզոտիկան:

— Համո, օգնիր,— ասացի ես՝ ճամպրուկներից մեկը բարձրացնելով:

Համոյի ճամպրուկը բռնելն ու մեջքը ճկվելը մեկ եղավ:

— Վա՜, այս ի՞նչ է մեջը սիմբա տված:

— Ի՞նչ է «սիմբա տված»:

— Սպասիր նստենք՝ նոր կբացատրեմ:

Երեք ուղևոր ու քարի նման ծանր ծանրոցներ. ձիու մեջքը սկսեց կորանալ: Ընկերս, ինչ խոսք, ձիու այդ կերպարանափոխությունը չնկատեց, բայց ես զգացի, թե ինչ է կատարվում Համոյի հետ, ձիու նման նա էլ էր կորացել:

— «Սիմբա տված»,— ասացի ես,— նշանակում է՝ ամեն մի դատարկ բան ճամպրուկի մեջ լցնելը: Գյուղական լեզվով,— ավելացրի ես, որպեսզի էկզոտիկայի սիրահար ընկերս չնեղանա:

— Ոչինչ, գլխիվայր է, քաշելու է,— ասաց Համոն:

— Ի՞նչ է...

— Գլխիվայր,—ասացի ես,— երբ իջնում ես:

Ընկերս, իհարկե, մտրակը վերցրեց, որոշ տեղ վարեց սայլը, բայց Համոն, գյուղացու հատուկ նրբավարությամբ, շուտով մտրակը ետ առավ նրա ձեռքից:

— Տուր մի տեսնեմ այն ինչ է,— ասաց նա, իբր ձիու մեջքին բան կա կանգնած, մտրակով պիտի խփի, փախցրնի:

Ընկերս զարմացած էր. այդ ի՞նչ էր, որ Համոն տեսավ, ինքը չտեսավ:

Շատ չերկարացնեմ, կիսաճանապարհին մթնեց, մեր կողմերում էլ մըշուշն անպակաս է, այնպիսի մի մառախուղ կոխեց, որ երկու քայլի վրա ոչինչ չէր երևում: Մենք այլևս ընթանում էինք այնպես, կարծես ձին ոտքերը բարձրացնում ու կրկին նույն տեղն էր դնում: Ընկերս հիացել էր, մինչդեռ ես ու Համոն մտահոգ էինք: Խոնավ ու սառը մառախուղը գնալով ավելի էր խտանում, բացարձակապես ոչինչ չէր երևում:

Ես իջա սայլից՝ ձիու բեռը թեթևացնելու համար, Համոն էլ իջավ: Ընկերս անհոգ բազմած բացատրում էր, թե ինչպես կարելի է անիվներին էլեկտրագեներատոր միակցել, լուսարձակներ դնել և այլն, այսինքն՝ հիմարություն:

— Իջիր, ոտքերդ թմբրած կլինեն, ոտքով գնա, որ բացվեն,— ես նրա ձայնի մեջ բարկություն նկատեցի:

Ընկերս էլ երևի ինչ-որ բան սկսեց հասկանալ, չհարցրեց, թե ի՞նչ է նըշանակում թմբրած կլինեն:

Գնացինք ևս որոշ ժամանակ, այլևս կատարյալ խավար էր: Համոն գետնից քարեր էր բարձրացնում, ձեռքերի մեջ շոշափում, աշխատելով հասկանալ, արդյոք ճանապարհից դուրս չե՞նք եկել: Եվս կես ժամ անց պարզ դարձավ, որ մոլորվել ենք:

— Վա՜, այս ի՞նչ անտեր գելի գիշեր է:

— Ո՞ւր է գայլը,— խորհրդավոր շըշնջաց ընկերս:

Համոն ծիծաղեց՝ չար ու մտահոգ:

Նա մի քանի անգամ էլ կրկնեց նույնը. քարերը վերցնում, շոշափում էր, նույնիսկ հոտ քաշեց: Հարցրի, ասաց.

— Սելի կոխած ճամփի քարն ուրիշ է, փոշոտ է լինում, համ էլ անասունի բանի հոտ է գալիս, ավտոյի:

Ես էլ քարերն առա ափերիս մեջ, մաքուր, անաղարտ քարեր էին, ոչ մեկը ջարդված չէր, կլոր որձաքարեր էին:

— Հիմա երկու անգամ գյուղ հասած կլինեինք,— ասացի քարերը թափելով,— իհարկե, մոլորվել ենք:

Ի՞նչ անել:

Համոն ձին կանգնեցրեց, մթության մեջ երևի շոշափեց կենդանուն, ասաց.

— Ջրի մեջ կորել է խեղճ անասունը:

Մինչ այդ միապաղաղ լսվում էին ձիու սմբակների ձայնն ու անիվների կրճտոցը, այժմ, կանգ առնելուց հետո, այնպիսի լռություն տիրեց՝ թվաց կանգնած ենք անսահման, տիեզերքի չափ



մեծ ու սև մի քարի մեջ: Իրար չէինք տեսնում, միայն խոսելիս ձայնով հասկացվում էր, թե ով որտեղ է կանգնած: Սուր ծակոցի պես մեզնից յուրաքանչյուրը երևի զգում էր նույնը՝ օջախի ու լույսի կարոտ: Սակայն որտե՞ղ է այդ օջախը, լույսը, բոլոր ուղղություններով նույն սև քարի անթափանց զանգվածն էր, միայն մառախուղի խոնավ շորշոփունքն էր զգալ տալիս, որ խավարում ինչ-որ շարժում կա:

— Համո, որտե՞ղ կլինենք,— ասացի ես:

— Սև ջահանդամի տակին,— լսվեց խավարում նրա ձայնն ու ես հասկացա, թե որքան փոշման է նա մեզ հանդիպելու համար, չնայած պարզ չէի գիտակցում, թե մոլորվելու մեջ մեր մեղքը որն է:

— Թողնենք թող ձին ճանապարհը գտնի,— ասաց ընկերս: — Չէ՞ք լսել, որ ձին խելացի կենդանի է:

— Ի՞նչ է ասում,— սրտնեղած ասաց Համոն. նա էլ երևի սրա լեզուն չէր հասկանում, իսկ գեներատորի մասին խոսելուց հետո նրա՝ նկատմամբ հարգանքը լրիվ կորցրել էր:

— Ասում է՝ ձին խելացի կենդանի է,— ասացի ես:

— Հա՜,— նույն ձայնով ասաց Համոն,— տեխնիկում է ավարտել:

Այնտեղ, ուր կանգնած էր ընկերս, թույլ հազոցի ձայն եկավ: Երևի նա մի քիչ վիրավորվեց: Մենք գյուղացի մարդիկ ենք, պարզ պատկերացնում էինք ստեղծված վիճակի լրջությունը, ընկերս հեռու էր այդ ամենից:

— Ես ճիշտ եմ ասում, ձին շատ խելացի կենդանի է,— ասաց ընկերս:— Չե՞ք կարդացել: Եթե մոլորվում ես, գիշեր է, ձյուն է կամ մառախուղ, պիտի թողնես սանձը: Նա քեզ ուղի՜ղ կտանի տուն:

Նրա բացականչական նշանով «ուղիղը» երկուսիս ծիծաղելի թվաց:

— Ուղի՞ղ,— ասաց Համոն:— Շատ ուղի՞ղ:

— Իհարկե,— ասաց ընկերս:— Չե՞ք հավատում:

Հավանաբար Համոն մտածում էր, պատասխանն ուշացավ:

— Իմ ձին դրանցից չի,— ասաց նա:

— Ձին ձի է,— ասաց ընկերս:— Բոլոր ձիերն էլ հոտառություն ունեն:

— Ուներ՝ թող գնար տուն,— նորից ձայնը բարձրացրեց Համոն:— Ես նրան ասացի՝ մեզ բեր այս ավերակը՞... Սրա քշելու ժամանակ ենք ճամփից ելել, չենք տեսել:

Գյուղականն այդ փոքրիկ անազնվությունը նույնպես ինձ ծանոթ էր. նա ցանկանում էր մեղքը հենց նրա վրա գցել, ում լավություն է արել: Իբր, մենք ձեզ լավություն ենք անում, դուք մեզ՝ վատություն:

— Համո,— ասացի ես,— ի՞նչ ենք անում: Հո այստեղ չե՞նք կանգնելու:

— Նստեք,— հանկարծ հրամայեց սայլապանը:— Որ սա այսպիսի ձի է՝ նստեք, մարդկությունը չհասկացավ:

Մենք հանույքով ելանք սայլը: Ամեն մեկիս դեմ սև խավարում ընդգծվում էր մյուս երկուսի ավելի սև կերպարանքը: Իսկ ձի՞ն ուր էր: Ձին չկար, չէր երևում, այնտեղ կարծես դատարկ էր:

Համոն մտրակով խփեց այդ դատարկությանը, ձայնեց.

— Դեհ...

Ձին շարժվեց:

— Թող ուր ուզում է, գնա,— ասաց սայլապանը:

Թյոկոցն ու սմբակների ձայները վերսկսվեցին: Գնում էինք, բայց ուր՝ հայտնի չէր:

Ձայները նկատելի խունացել էին, գետինն արդեն խոնավանում էր, մառախուղի մեջ զգացվում էր անձրևի մանրիկ կաթիլների սառնությունը:

— Պահո՜,— ասաց Համոն,— անձրևն էլ որ սկսվե՜ց...

— Թող գնա,— ասաց ընկերս,— մտրակով մի խփիր,— ավելացրեց նա այնպիսի ձայնով, իբր՝ խելոքին խփել պետք չէ, խելոքը գիտի ինչ է անում:

— Մեր տակինը ճանապարհ չի,— ասաց Համոն:

— Ի՞նչ իմացար,— ասացի ես:

— Քարերը քիչ են, ոնց որ՝ խոտհարքի տեղեր են, հողը փափուկ է երևում:

Իսկ երբ քիչ անց անիվները սկսեցին քարերի վրա կրճտալ, ընկերս բացականչեց.

— Ձին ճանապարհը գտա՜վ:

Համոն ծխախոտը վառեց և նրա լուցկու լույսը, ապա ծխախոտի փոքրիկ կրակը մեզ մի քիչ ուրախացրեց: Այս ինչքա՜ն մարդը կապված է լույսի ու կրակի հետ: Թվաց՝ մենք չենք կորչի, քանի կա այդ փոքրիկ կրակը, որ երբեմն-երբեմն կայծին էր տալիս՝ լուսավորելով Համոյի անթրաշ մռութը:

Գնում էինք: Ընկերս ասաց.

— Ձիերն ու շները շատ խելացի կենդանիներ են, նրանք մարդու բնավորությունն ունեն, որովհետև մարդու հետ շատ են շփվում: Սովորում են: Կտեսնեք, նա մեզ կհասցնի գյուղ:

Մենք լսում էինք նրան ու մի տեսակ թվում էր՝ նա մեզնից ավելի լավ գիտի այդ կենդանիների վարքը:

— Ձե՞ք հիշում, դասագրքերում էլ կար մի ձիու մասին, որն ինքն էր իր ոտքով գնում անասնաբույժի մոտ և նրա վիրավոր ոտքը նա վիրակապում էր:

— Ճիշտ է,— ասաց սայլապանը, և նրա աշխուժությունն ինձ ուրախացրեց, որովհետև երկուսս էլ ներքուստ մեզ մեղավոր էինք զգում:

— Մի ուրիշ ձի էլ, երբ տերն ընկել էր ու վիրավորվել, պառկել էր կողքին, և տերը մի կերպ բարձրացել էր նրա վրա ու այդպես փրկվել:

— Ճիշտ է,— այնտեղ, ուր Համոն էր, ծխախոտը բոցավառվեց:— Այդ մինը կինոյում էր:

Մեզ թվում էր ձին ավելի եռանդով էր սկսել քայլել, մեզ թվում էր այդ խելացի կենդանին լսում էր մեր խոսքերն ու այդ եռանդով ասում էր մեզ՝ հանգիստ եղեք, ես ձեզ տեղ կհասցնեմ, այդ հարցերում ես ձեզանից ավելի խելացի եմ:

— Հիմա՛, հիմա՛ կհասնենք,— ասաց ընկերս:— Այ կտեսնեք: Հետո կպատմեք, թե ոնց եղավ: Ձին շատ խելացի կենդանի է:

Այսպես խոսելով ընթացանք ևս որոշ ժամանակ, Համոն ասաց.

— Վա, այս ո՞ւր է տանում մեզ այս անասունը:

Ընկերս կարծես ձիու փոխարեն վիրավորվեց.

— Նա գիտի մեզ ուր է տանում: Նա մեզ տանում է տուն:

— Ախր երեք անգամ գյուղ հասած կլինեինք, այս գյուղը ո՞ր գետնի տակը մտավ... Դե՛հ:

— Մի քշիր,— զգուշացրեց ընկերս,— պետք չէ խանգարել: Ձիերն աշխարհի ամենախելացի կենդանիներն են, մենք ճանապարհը չենք տեսնում, նա տեսնում է:

Համոն բարկացած գոմռաց.

— Սա այնպես է խոսում, ոնց որ ձին մարդուց խելացի է:

— Հա՛, հա՛,— տաք-տաք ասաց ընկերս:— Դուք լուռ նստեք:

Լավ սառել էինք, թրջվել, քամի էր: Այդ քամին հույս էր տալիս, որ մառախուղը կցրվի, բայց առաջվա պես մատդ կոխեիր մարդու աչք՝ չէր տեսնի:

— Ծորեր ունեք՝ հանեք, հագեք,— ասաց Համոն:— Կմրսեք:

Գնացինք որոշ տեղ, Համոն լուռ էր, հանկարծ հառաչելով բացականչեց.

— Այ մի շիշ օղի լիներ, հա՜:

Սա մի մեծ և ուրախալի գյուտ էր, մեր հուսահատ ու անհեռանկար ճամփորդության մեջ: Ընկերս շոշափելով գտավ իր այն ճամպրուկը, որի մեջ խըմիչք կար: Բաժակ չունեինք, հերթով խմեցինք հենց շշով և քիչ անց տաքացանք: Հիմա էլ սկսեց թվալ, թե այսպես լավ է, մոլորվել ենք, թե չենք մոլորվել, ինչ էլ կատարվի՝ վախենալու ոչինչ չկա:

— Հա՛,— ասաց Համոն,— ձիանքը շատ հասկացող անասուն են:

— Քեզ մի քացի տված կա՞, Համո,— ասացի ես:

Նա կարծես մոռացել էր՝ ցերեկով ո՞ւմ էր հանդիպել, ողջագուրվել, երևի դեմքս չէր հիշում, երկար ու լուռ իմ կողմն էր նայում՝ աշխատելով մտաբերել: Քիչ անց ծխախոտը վառելու պատրվակով նա վառած լուցկին մոտեցրեց դեմքիս և ասաց.

— Բաբկե՞ն:

— Հե՜յ,— ասացի ես մերոնց ձևով:

— Որտեղի՞ց ես գալիս, Բաբկեն:

— Երևանից,— ասացի ես:

— Բա ո՞ւր ես գնում:

— Ես շատ գիտեմ՝ ուր եմ գնում,— ասացի ես:

Ծիծաղեցինք, և Համոն ասաց.

— Մոռացանք մի բաժակ կոնյակ էլ այս խեղճ կենդանունն տալ: Բա դա մարդկությո՞ւն էր:
Նորից ծիծաղեցինք:
Համոն լուցկին վառեց, քամուց մի կերպ բոցը պաշտպանելով՝ նայեցինք ժամացույցին ու զարմացանք. ժամը չորսն էր: Ուրեմն, վեց-յոթ ժամ ճանապարհի վրա էինք:
— Աա, այս անասունը մեզ ո՞ւր է տանում: Խելքներս տվել ենք ձիուն:
Ընկերս տաք-տաք ընդհատեց Համոյին.
— Հի՛մա, հի՛մա կհասնենք: Դու ձիուն մի խանգարի, թող իր ուզածով գնա:
Ձին իր ուզածով մեզ տարավ ևս մի ժամ և հանկարծ ինչ-որ ձայն լսեցինք: Կանգ առանք ու կրկին հայտնվեցինք անսահման սև, անսահման մեծ, անսահման կարծր քարի մեջ: Շունչներս պահած ականջ էինք դնում, և իրոք շան հաչոց լսեցինք: Ուրախացանք, իհարկե, աշխուժացանք:
Ձին շարունակեց իր քայլքը: Մի քանի րոպե անց հոտեր առանք, և մի քանի րոպե անց Համոն ասաց.
— Հա, էլի՛, հասանք:
Իջավ, գնաց խավարում ինչ-որ կողմի վրա, ետ եկավ, ասաց.
— Պատ էր, տան պատ: Ապրի ձին:
— Բա որ ասում էի՛,—բացականչեց ընկերս և մենք իջանք սայլից:
Մեր ձայնի վրա շունն ավելի բարձր սկսեց հաչել: Քիչ անց մեկը ձայն տըվեց.
— Ո՞վ եք, ի՞նչ եք ուզում:
— Ես եմ, Համոն է, Արզուման:
Արզումանը մեր գյուղի ամենաառաջին տան տերն էր:
— Արզումանը [illegible]երդ է,— ասաց ձայնը:— Փախեք այստեղից, թե չէ, խմած շան որդիք... Քնահարամ արիք:
— Քնիր, քնիր, Արզուման,— ասաց Համոն:— Վեր ելեք,— ասաց նա մեզ:
Բարձրացանք սայլը, ձին գնաց: Գընաց ու կանգ առավ: Դա շատ տարօրինակ էր: Համոն իջավ, գնաց կորավ խավարում, այնտեղ ինչ-որ բան շոշափեց, ետ եկավ:
— Պատ է:
— Ավելի լավ,— ասաց ընկերս:
— Ինչը՞ լավ, ճանապարհի մեջտեղը պատ է: Այստեղ պատ չկար:
Հիմա էլ այս բակի շունը սկսեց հաչել: Սա ելավ բակից, եկավ, ձիու դընչի դեմ ինչ-որ տեղ կանգնած աճավոր բամբյուններով հաչում էր՝ թոքերից թնդանոթի պես կրակելով: Հետո ուրիշ շներ էլ եկան, խավարում այստեղ ու այնտեղ չորս-հինգ շուն տարբեր ձայներով հաչում էին: Անհնարին էր, իհարկե, որ այդպիսի աղմուկի վրա մարդիկ չարթնանային: Քիչ անց լսվեց բակի դռան բացվելու ճռոցը, ապա մեկը հարցրեց.
— Ի՞նչ մարդիկ եք, այստեղ ի՞նչ գործի եք:
— Սոկրա՞տ,— հարցրեց Համոն:
— Ո՞վ եք:
Համոն հանկարծ խոսեց այնպիսի ձայնով, ինչպես երազում ոսկի գտածն արթնանա.
— Վա՛հ, այս որտե՞ղ ենք:
— Ձեր գյուղում եք, որտեղ եք,— ասաց ընկերս:
— Կարո՞ղ է՝ ես մեր գյուղը չեմ ճանաչում, դու ես ճանաչում,— ասաց Համոն:
Խոսողը տվեց մի գյուղի անուն, որ առաջին պահին անհավատալի թվաց: Մեր գյուղից մենք հեռու էինք երեսուն կիլոմետր, այն էլ լրիվ հակառակ ուղղությամբ:
Արդեն լուսանում էր, արդեն պարզ երևում էր, որ օտար մի գյուղ է, օտար մարդիկ շրջապատել էին մեզ, կանգնել:
Ձին էլ էր կանգնել: Հոգնած, թըրջված, գլուխը կախ, այնպիսի արտահայտությամբ, կարծես ասելիս լիներ՝ ինչ որ ինձնից է կախված՝ արել եմ, հիմա ինձ տարեք ախոռ, թողեք հանգստանամ:
— Քո տիրոջ... —ջղայն ասաց Համոն՝ մտրակը շպրտելով ձիու դնչին:
Ընկերս լուռ էր, ձիու փոխարեն կարծես ինքն էր ամոթահար:
— Բա մարդ ձիու խելքին կընկնի՞,— ասացին օտար մարդիկ, երբ իմացան եղելությունը:
Ահա այսպիսի մի պատմություն ձիու մասին: Ձիերն, իհարկե, խելացի կենդանիներ են, բայց լինում են նաև հիմար ձիեր:
Համոյի ձին հիմարներից էր:

ՆՎԻՐՎԱԾ ԷՐ ՀԱՅԱՍՏԱՆԻ

# ԷՍՏԱՖԵՏ—ԱԼԲՈՄԸ



Երեկոյան ժամը 8-ն էր: «Գարուն» ճամբարի մուտքից մինչև տողանի հըրապարակ՝ պատվի առած կանգնել էին մի քանի ջոկատներ ու սպասում էին:

Տողանի հրապարակում սպասում էր դրուժինան:

Լռություն էր:

— Բերում են...

Հանդիսավոր արարողությունն արդեն սկսված էր, բարձրաձայն խոսել

չէր կարելի, բայց լուրն անցավ ականջից-ականջ, հասավ բոլորին:

Նվագախմբի հնչյունների տակ, չորս դրոշակակիրների ուղեկցությամբ զինվորական ձիգ քայլերով ճամբար է մտնում հարևան «Արշալույս» ճամբարի պիոներներից մեկը: Նրա ձեռքին մի ալբոմ կա՝ շքեղ կազմով: Իսկ գարունականներից չորս դրոշակակիրներ՝ Կարինեն, Վարուժանը, Արմենն ու Գայանեն, ուղեկցում են նրան մինչև տողանի հրապարակ:

Դրուժինայի խորհրդի նախագահ Հեղինե Անտոնյանը, ալբոմն ընդունելով, դնում է տողանի հրապարակում դրված սեղանին՝ պիոներական փողկապի վրա:

— Բերե՛լ դրոշները,— հնչում է հրահանգը, և հանդիսավոր քայլերով պիոներները հրապարակ են բերում ՍՍՀՄ-ի, Հայաստանի ու դրուժինայի դրոշները:

Ճամբարի պետ Օնիկ Սահակյանը պիոներներին պատմում է էստաֆետ-ալբոմի դերի ու նշանակության մասին: Նրա պատմածից պիոներները իմացան, որ Հայաստանի տարբեր ծայրերում գտնվող ճամբարախմբերի էստաֆետ ալբոմները նվիրված են Հայաստանի լենինյան կոմերիտմիության 60-ամյա տարելիցին և ստեղծվել են ՀԼԿԵՄ Կենտկոմի նախաձեռնությամբ:

Յուրաքանչյուր ճամբար ալբոմին տրամադրելու է երկու էջ: Էջերից մեկում լինելու է ճամբարի տարեգրությունը, հաջորդում՝ նկարագրվելու, պատկերվելու է ճամբարի առօրյան: Ալբոմը մեկնարկ է վերցնում այն ճամբարից, որը ամենահինն է: Իսկ Ծաղկաձորում ամենահին ճամբարը ի՞նչն է՝ «Գարունը»: Ստեղծվել է 1935 թվականին:

Ալբոմը «Գարուն» ճամբարում մնալու էր երկու օր: Այդ օրերին անցկացվեցին ջոկատային հավաքույթներ, դրուժինայի հավաքույթ, կազմակերպվեցին ջահերթեր, շրջանաձև վառվեցին 11 ջոկատային փոքրիկ խարույկներ, իսկ շրջանի ներսում վառվեց մեծը՝ դրուժինայի խարույկը: Խարույկների շուրջ պիոներները երգեցին, պարեցին և արտասանեցին, անցկացրին մրցումներ, ուրախ ժամանցներ և այլն: Այս ամենը նվիրված էր ՀԼԿԵՄ 60-ամյակին:

Էստաֆետ-ալբոմը դրվել էր պիոներսենյակում: Կողքին կանգնած էին պատվո պահակներ, որոնց 10 րոպեն մեկ փոխարինում էին նորերը:

Երկու օր անց «Գարուն» ճամբարի մուտքի մոտ կանգնեց Տերեշկովայի անվան ճամբարի մեքենան և կրկին չորս դրոշակակիրների ուղեկցությամբ, հանդիսավոր պայմաններում ալբոմը հանձնվեց նրանց պատվիրակությանը: Եվ այսպես շարունակ, մինչև էստաֆետ-ալբոմն անցավ Ծաղկաձորում գտնվող բոլոր 18 ճամբարներով: Իսկ երբ ավարտվեց էստաֆետ-ալբոմների համար նախատեսված ժամկետը, Հանքավանի, Ծաղկաձորի, Սևանի, Ստեփանավանի պիոներական ճամբարների պատվիրակությունները, հավաքվելով Ծաղկաձորում, էստաֆետ-ալբոմները հանձնեցին ՀԼԿԵՄ Կենտկոմի ներկայացուցիչներին:

Էստաֆետ-ալբոմները ցուցադրվելու են Հայաստանի լենինյան կոմերիտմիության նորաբաց թանգարանում:

*ՄԽԻԹԱՐ ԱՍԿԱՆՅԱՆ*

# ՄԵՐ ՔԱՋ ՔՈՒՉՈՆ

ՍԻՐՎԵՆ ԱՐՇԱԿՈՒՆԻ

Սա մեր Քուչո շունիկն է, տե՛ս,
Սա էլ նրա տունիկն է, տե՛ս:
Գիշեր-ցերեկ անքուն, արթուն
Պահպանում է՝ նա դուռ ու տուն:
Մեկ հաչում է հորթի վրա,
Մեկ վախվորած՝ գորտի վրա,
Հոգնած նստած կովի վրա,
Ցեխում կորած խոզի վրա,
Խենթ ու խելառ ցուլի վրա,
Չարաճճի ուլի վրա,
Սագի վրա, հավի վրա,
Վատի վրա, լավի վրա,
Հաչում է հա՛, հաչու՛մ, հաչու՛մ,
Կարգ ու կանոն է պահանջում:
Իսկ երբ էշն է հանկարծ զռռում,
Մեր քաջ Քուչոն
Չորս ոտք ունի,



Զորսն էլ ասես փոխ է առնում,
Լեղապատառ փախչում է տուն։

Նկ. ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ

ՊԱՏՐԱՍՏԻՐ ԻՆՔԴ









# ՏՐԱԿՏՈՐ

**ԱՆՀՐԱԺԵՇՏ ՆՅՈՒԹԵՐ.** Լուցկու տուփ, կոճ, երկու խցան, ծղոտե ձողիկ, ստվարաթուղթ, քորոց։

**ՊԱՏՐԱՍՏԵԼՈՒ ՁԵՎԸ**

1 (նստելատեղը) և 2 (ղեկը) մասերը ստվարաթղթի վրա նկարել ու կտրել։ 1 մասը ծալել ու կոճին կպցնել։ Լուցկու տուփն ու կոճը սոսնձել իրար։ Զույգ խցանները, որպես անիվներ, առջևից կպցնել։ Ղեկը քորոցով ամրացնել տուփին։

ԱՐՇԱՎԻՐ ԱՎԱԳՅԱՆ

## ՏԵՐԵՎԱԹԱՓ

Հոգնած արևը
շուտ է հեռանում այգիներից,
սարերը նայում են հոսող երկնքին,
սարերն էլ ուժ չունեն
ամպերը հեռու քշելու,
սարերն էլ ուժ չունեն
որոտալու համար:
Գյուղի կանաչ պատերը
խարխլվել են քամուց,
առվի ջրերը հղի են փաթիլներով,
առվի ջրերը լցված են
կրակներով տերևների:
Օրերն անցնում են
մերկացող ծառերի տակով,
կայծակը թևն է կոտրել
ամպերի խորքում,
ամպերը ուժ չեն գտնում
արտասվելու համար:

## ՁՄԵՌՆԱՄՈՒՏ

Մի լալկան ամպի վրա նստած՝
հեռանում է աշունը,
ցրտահարված տարվա
ցավը ճակատին:
Այգիներում էլ կանչեր չկան:
Արագիլները գնացել են
առանց հրաժեշտի,
արահետները կորել են
առատ տերևաթափի մեջ:
Մրգաբույր հնձանների միջով
եկել է տագնապը,
կարկտահար խնձորները
ժպտում են կարմրած դեմքով,
սարերը ցուրտ լուրեր են ուղարկում
դատարկվող շուկաներին:
Արայի լեռան գլխին
ձյուն է շաղ տալիս
մի ճերմակ ձեռք:
Ամպերի դարպասները
բացվում են ձմռան առաջ:

ՍՈՒՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆ




(Հայկական բանահյուսությունից)

Էշը մի օր տիրոջից խռովել, դունչը տնկած գնում էր: Ճանապարհին հանդիպեց ուղտին:

— Բարև, էշ ախպեր,— ասաց ուղտը:

Էշը բարևն առավ ու գլուխը կախ, արագ առաջ անցավ:

—Այ էշ,— հետևից ձայն տվեց ուղտը,— հենց էդ մի բարևն էր, տվիր ու գնո՞ւմ ես:

—Հա՛,— ասում է էշը,— խոսելս չի գալիս, սիրտս լիքն է:

— Էշ ախպեր, մի ասա՝ որտեղի՞ց ես գալիս, ո՞ւր ես գնում, դարդերդ պատմիր, սիրտդ թեթևացրու, թե չէ՛ էնպես ես վազում, ասես աշխարհի ամենաարագաշարժ կենդանին ես:

— Այ ուղտ ախպեր, —ասում է է-շը,— իմ տիրոջից նեղացել եմ, մոտը չեմ ուզում մնալ, գլուխս առել, գնում եմ:

— Հո ինձնից էլ չե՞ս նեղացել, ցավդ պատմիր, լսեմ:

Էշն ընթացքը դանդաղեցնում է, որ ուղտը հասնի:

— Ուղտ ախպեր, —ասում է,— տասներկու տարի է՝ գլուխս կախ, հնազանդ ծառայել եմ իմ տիրոջը: Ամեն օր բեռը շալակիս անպակաս, ճիպոտն իրենից անպակաս: Էս դեռ մի կողմ, խոտըն ու գարին լցնում է ձիու առաջ, որ գործ չի անում, իսկ ինձ տալիս է նրա կրճռնքը, շատ դեպքում էդ էլ չի տալիս: Եթե բան է՝ զռում եմ, որ հիշեցնեմ գոյությունս, տերս ծեծում է, թե՝ ինչո՞ւ ես իմ գլուխը ցավացնում: Հիմի քեզ եմ հարցնում, ուղտ ախպեր, արժե՞ էդպես տիրոջ մոտ մնալ:

— Է՜, էշ ախպեր, դունչդ տնկել ու թափով անց ես կենում, էլ չես ասում հարցնեմ ուղտին, թե սա՞ ուր է գնում, սա՞ ինչ դարդ ունի: Իմ տերն էլ ինձ է բարձում, նստում վրաս ու ո՛չ շոգ է հարցնում, ո՛չ անձրև: Քաղաքից քաղաք, գյուղից գյուղ, շաբաթներով, ամիսներով քշում է ու քշում: Ո՛չ կարգին կեր է տալիս, ո՛չ կարգին՝ ջուր: Ես նույնպես չդիմացա, էշ ախպեր, արի մեկը՞ չլինենք՝ երկուս լինենք:

Էշն ու ուղտը ընկերանում են և ճանապարհը շարունակում: Շատ են գը-նում, թե քիչ, մտնում են մի խոր անտառ, կանգ են առնում անտառի մի բացատում, որտեղ սառնորակ աղբյուր և առատ խոտ կար:

— Սրանից լավ տեղ չենք ճարի, և՛ կերն է առատ, և՛ ջուրը,— ասում է ուղտը:

Անցնում է մի քանի ամիս: Երկուսն էլ լավ չաղանում, լցվում ու հանգիստ քեփ են քաշում իրենց համար:

Մի օր էլ էշը թե՝

— Ուղտ ախպե՛ր, քեփս լավ է, երգելըս գալիս է, քանի ամիս է էստեղ ենք, դեռ մի անգամ չեմ երգել:

— Գժվե՞լ ես, ի՞նչ է, ուզում ես մեր տեղն իմաց անես, մարդիկ գան ու նորից մեզ տանեն չարչարեն:

— Արդեն մթնելու վրա է,— առարկում է էշը,—ո՞վ կա մոտերքում, որ լըսի, ես երգեմ, դու ականջ դիր:

Ուղտը աղաչում-պաղատում է, թե՝ մի անի, ճար չի լինում, էշի համառությունը բռնել էր: Երգելս գալիս է, պետք է երգեմ, և սկսեց, ու-հա՜, ու-հա՜, ու-հա՜...

Կերած-խմած, չաղացած էշ, ձայնն էնպես գուխը գցեց, որ սար ու ձոր, անտառ ու ժայռ արձագանքեցին: Էդ ժամանակ, դու մի ասի, երկու մարդ սարում հունձ էին արել, ետ դառնալիս որոշել էին մի-մի շալակ փայտ տանեն տուն:

— Էս ժամին էշն ի՞նչ գործ ունի անտառում,— ասում է նրանցից մեկը,— արի բռնենք, մեր փայտը բարձենք, տանենք: Թե տերը դուրս կգա՝ կտանք իրեն, թե չէ՝ հերթով կբանացնենք:

— Լավ ես ասում,— պատասխանում է մյուսը,— ես էնքան հոգնած եմ, որ ինձ հազիվ եմ տանում, փայտ չեմ կարող շալակել:

Էշի ձայնի ուղղությամբ գալիս են տեսնում, ա՛յ քեզ բախտ, էշի հետ մի ուղտ էլ կա:

— Էս լավ եղավ, մեկս ուղտին կըբարձենք, մեկս՝ էշին ու աճագին փայտ կտանենք տուն:

Էդպես էլ անում են և ճանապարհ ընկնում: Ուղտն առաջից է գնում, էշը՝ ետևից: Ուղտը գլուխը թեքում, էշի ա-

կանչին փափսում է.

— Այ էշ, այ տնաքանդ, էս ի՞նչ փորձանք բերիր մեր գլխին:

Էշը գլուխը կախում, պատասխան չի տալիս: Մի քիչ որ գնում, անտառից դուրս են գալիս, էշը ոտքը դեմ է տալիս ու կանգնում: Ինչքան ծեծում, ջարդում են, առաջ չի գնում:

— Էլ ճար չկա,— ասում է գյուղացիներից մեկը,— բարձած էշը դնենք ուղտի վրա, ուղտը խելոք է, կտանի:

Բարձած էշին դնում են ուղտի վրա ու շարունակում ճանապարհը:

«Լա՜վ,— մտածում է ուղտը,— չես մարսի, համառ էշ. տեղը գա՝ ես էլ իմ գիտեցածը կանեմ»:

Մոտենում են գյուղին, լսվում է հարսանեկան նվագի զիլ ձայնը:

— Լսո՞ւմ ես, ինչ լավ են նվագում,— ասում է ուղտը, երբ հասնում են կամուրջին:— Դե հիմա էլ իմ պարելն է գալիս, պիտի պարեմ:

Ասում ու էնպես է պարում կամուրջի ճիշտ մեջտեղում, որ էշն իր բեռով ուղտի մեջքից գլորվում, ընկնում է ջուրը, խեղդվում:

Այ, էստեղ են ասել, թե ուղտի պարը կամուրջի վրա է բռնում:

Նկ. ՍԱՐՈ ԿԱԼԵՆՑԻ






# ՊԱՏԵՐԱԶՄ ՄՈՒՍՈՆՆԵՐԻՆ

Այդ անձրևոտ օգոստոսյան օրը հնդկական Մորվի քաղաքն ապրում էր սովորական առօրյայով: Փողոցներում երեխաներ էին խաղում, շտապում էին հետիոտները: Ոչ ոք չգիտեր, որ գետում ջրի մակարդակը բարձրացել է, քանդել ամբարտակը և դուրս հորդել քաղաքի ուղղությամբ: Երկհարկանի տան բարձրություն և երկու կիլոմետր լայնություն ունեցող շագանակագույն հեղեղը շարժվում էր գնացքի արագությամբ: Հաշված րոպեների ընթացքում այն լուցկու տուփերի նման թռցրեց տները, մետաղի ջարդոն դարձրեց ավտոմեքենաներն ու ավտոբուսները, հազարավոր մարդկանց կյանք տարավ...

Մուսոնների ամեն սեզոն հնդիկ ժողովրդից տասնյակ հազարավոր մարդկային զոհեր է խլում և միլիարդավոր ռուփիի վնասներ պատճառում: Մուսոնները միայն ջրհեղեղներ չեն, երբեմն դա բերքը լրիվ այրող, անասուններին կերից զրկող, ամեն ինչ մոխրացնող երաշտի տեսք է ունենում:

Իսկ ինչպե՞ս պայքարել այդ տարերային աղետի դեմ:

Այդ մասին համագործակցած մտածում են հնդիկ և սովետական գիտնականները: Սովետա-հնդկական համատեղ «Իսմեկս» փորձարկումն օգնեց լուծելու մուսոնների գաղտնիքը: Գիտնականները դիտարկումներ անցկացրին Արաբական ծովում և Բենգալյան ծոցում, չափեցին օվկիանոսի և մթնոլորտային շերտերի ջերմաստիճանները: Փորձարկումներին մասնակցեց նաև հնդկական «Բհասկարա» արհեստական արբանյակը, որն ուղեծիր էր դուրս բերվել սովետական հրթիռով, մեր տարածքից:

Հնդիկները հույս ունեն, որ շուտով հնարավորություն կընձեռվի լիովին բացահայտելու մուսոնների գաղտնիքները:

# ԹԵՎԱՎՈՐ ԴԱՀՈՒԿՈՐԴՆԵՐԸ

Ֆրանսիայում և Ավստրալիայում սպորտի նոր ձև է հայտնվել: Ավանդական հենափայտերի փոխարեն դահուկորդները մի զույգ պլաստմասսայե թևեր են ստացել: Դրանցից յուրաքանչյուրը մոտ կես քառակուսի մետր մակերես ունի, ռետինակապերով ամրացվում է դահուկորդի թևերին: Եթե դահուկորդը կարողանա օգտվել այս թևերից, որ մշակել են աերոդինամիկայի մասնագետները, ապա սարից արագ իջնելիս կարող է թռչել դեպի վեր ու սավառնել օդում: Ըստ որում առանց տրամպլինի (ցատկատախտակի): Սպորտի այս ձևով խանդավառվածները պնդում են, որ նման թռիչքները օդում մեծ հաճույք են պատճառում: Առաջարկված է թևավոր դահուկորդներին տեղ տալ միջազգային՝ այդ թվում նաև օլիմպիական մրցումներում:



Երևանի № 48 դպրոցի աշակերտների շարադրություններից

# «ԻՄ

Հայրս երբեք իմ և եղբորս ներկայությամբ չի վիրավորում մայրիկին:

Ես գոհ եմ իմ հայրիկից: Նա շատ հաճախ է մեկնում գործուղման հեռավոր վայրեր, և ես շատ եմ կարոտում, ցանկանում եմ, որ նա ամեն րոպե լինի իմ կողքին: Ես հայրիկից ընդօրինակում եմ ազնվություն, հոգատարություն, ժողովրդասիրություն ու հայրենասիրություն:

## ՀԱՅՐԻԿԻ ՀԵՏ ՈՒՐԱԽ Է

Իմ հայրիկին դաս եք տվել դուք, ընկեր Աբելյան, և գիտեք նրա մասին: Ճիշտ է, նա չի ավարտել բարձրագույն ուսումնական հաստատություն, սակայն իր ջանասիրության շնորհիվ դարձել է արտադրամասի պետ: Հայրիկս ինձ շատ խորհուրդներ է տալիս, որոնցից են՝ չծխել, չկոպտել և այլն: Հայրիկըս հաճախ ստուգում է իմ դասերը, և թեկուզ լավ էլ լինի, միշտ ասում է՝ վատ է, այդպես ասում է, որ մի քիչ ավելի պարապեմ: Իմ եղբայրն այս տարի ընդունվեց Երևանի պոլիտեխնիկական ինստիտուտը: Հորս չէր հայտնել, թե ինչ մասնագիտություն է ընտրել, ուր է դիմումները տալու: Լավ է, որ նա ընդունվել է, բայց լավ չէ, որ իր մտադրությունը թաքցրել էր ծնողներից:

Հայրիկիս հետ տանը շատ ուրախ է:

## ՀԱՆՈՒՆ ՄԵԶ

Երբ ես դեռ փոքր էի, մահացավ իմ մայրիկը: Հայրիկս եթե չմտածեր իմ մասին, եղբորս մասին, ինչպես նաև քրոջս մասին, ի՞նչ կլիներ մեր վիճակը: Նա մեզ սկսեց խնամել և խնամում է մինչև հիմա: Չի կարելի ասել, թե նա օգնում է ինձ դպրոցական գործերում և չի կարելի ասել, որ մշտապես չի օգնում. չէ՞ որ նա աշխատում է և քիչ ժամանակ ունի: Բայց նա աշխատում է մեզ համար, որ մենք մարդ դառնանք: Նա նույնիսկ հիվանդ-հիվանդ է գործի գնում և այդ ամենը անում է հանուն մեզ:

## ՈՒԶՈՒՄ ԵՄ ՄԻՇՏ ԿՈՂՔԻՍ ԼԻՆԻ

Իմ հայրը շատ բարի է և խստապահանջ, բայց միաժամանակ երեխաների հոգին ներթափանցող:



«ՀԱՅՐԻԿԸ»

## ՍԻՐՈՒՄ ԵՆՔ ՄԵՐ ՀԱՅՐԻԿԻՆ

Իմ հայրիկը շատ խըստապահանջ է և հոգատար: Հոգատար է ոչ միայն ընտանիքում, այլև դրսում: Նրան հարգում են բոլորը: Իմ ծնողական ժողովներին հայրիկս է մասնակցում: Բայց հաճախ էլ պատահում է, որ հայրիկս ու մայրիկս միասին են գնում ժողովի: Ընդհանրապես հայրիկիս դերը մեր ընտանիքում շատ մեծ է: Հայրիկի և մայրիկի հարաբերությունները նույնպես լավ են: Երբ հայրիկս տուն է գալիս, բոլորիս ուշադրությունը դառնում է նրա կողմը. վերցնում ենք վերարկուն, հանում կոշիկները:

Մենք սիրում ենք մեր հայրիկին:



## ՆԱ ԻՆՁ ՉԻ ՀԱՎԱՏՈՒՄ

Դպրոցից տուն եմ գալիս, մի քիչ դաս սովորում, այնուհետև գնում եմ պարապմունքի: Պարապմունքից վերադառնում եմ 7-ին կամ 7-30-ին, հայրս հարցնում է. «Ինչո՞ւ ես այդքան ուշ գալիս», իսկ ես՝ «Պարապում էինք, պա»: Հայրս չհավատալով ինձ, ասում է. «Այսքան ժամանակ պարապու՞մ էիք, զգույշ մնա, հա՛...» Եվ ամեն անգամ այդ նույն հարցն ու այդ նույն խորհրդավոր «զգույշ մնա, հա...»-ն: Մեկ որոշում եմ այլևս չգնալ պարապմունքի, որովհետև ձանձրացել եմ այդ ամենից, ցանկանում եմ, որ հայրս հավատա ինձ, որ ես բացի պարապմունքից ուրիշ ոչ մի տեղ չեմ գնում, բայց առանց սպորտի չեմ կարող...

## ՀԱՅՐԻԿՍ ԻՄ ԸՆԿԵՐՆ Է

Իմ հայրիկը 42 տարեկան է: Վարորդ է գործարանում: Նա ինձ համար շատ թանկ է: Հայրս խստապահանջ է, բայց շատ հոգատար: Հայրիկի հարաբերությունները մայրիկի հետ շատ լավ են:

Մենք տանը չորս երեխա ենք, և բոլորիս հետ էլ հայրս մտերիմ է: Չգիտեմ ինչու հաճախ տխուր է լինում: Չգիտեմ, թե ինչպես են ուրիշների հայրիկները, բայց իմ հայրիկը ինձ դուր է գալիս: Երբ հարևանները մի դժվար գործ են անում, հայրիկս օգնում է: Նրան իր այդ բարի հոգու համար բոլորը հարգում ու սիրում են:

# ԷԴՎԱՐԴ ՄԻՐԶՈՅԱՆ

Սովորում էր Երևանի Կրուպսկայայի անվան դպրոցում: Կոմպոզիտոր դառնալ բոլորովին չէր էլ երազում և, իր խոստովանությամբ, մանկության տարիների միակ բաղձանքը կոշկակար դառնալն էր: Հաճախում էր նաև երաժշտական դպրոց և այնտեղ սովորածը հաճույքով կատարում իր դասընկերների համար՝ աշակերտական հանդեսներին:

Բայց ինչպես եղավ, որ նա սկսեց երաժշտություն հորինել:

Չորրորդ դասարանում էր: Մի օր տուն եկավ դպրոցից և սովորականի պես չվազեց բակ՝ խաղալու: Ուսուցչուհին պատմել էր 1905 թվականի հունվարի 9-ի «Արյունոտ կիրակիի» մասին: Ցնցող դեպք էր: Պատկերը չէր հեռանում աչքից: Նստեց դաշնամուրի առաջ և այդ տեսարանը փորձեց նկարագրել երաժշտական լեզվով: Ցույց տվեց հորը՝ կոմպոզիտոր Միքայել Միրզոյանին: Հայրը հավանեց: Հետո ցույց տվեցին Ռոմանոս Մելիքյանին, որը հաճախ այցելում էր Էդիկենց տուն՝ ասուլիսների: Նա ևս հավանեց և գովեց փոքրիկ Էդվարդին: Դա եղավ Էդվարդ Միրզոյանի առաջին ստեղծագործությունը:

Մի քանի տարի անց նա գրեց իր «Երգ անխոսը» նվիրված Ռոմանոս Մելիքյանի հիշատակին և էլի մի քանի երգեր, որոնց հիման վրա էլ 14-ամյա պատանուն ընդունեցին կոնսերվատորիայի ստեղծագործական բաժնի նախապատրաստական դասարանը:

Հետագայում Էդվարդ Միրզոյանն ավարտեց կոնսերվատորիան, մասնակցեց Հայրենական պատերազմին, դարձավ անվանի կոմպոզիտոր, հասարակական գործիչ և սիրված մարդ:

1940 թվականին նրա «Փառք կարմիր բանակին» երգը մրցանակաբաշխությունում ճանաչվեց լավագույնը՝ արժանացավ առաջին մրցանակի: Տարիների ընթացքում ուրիշ շատ նշանակալից ստեղծագործությունների հետ («Հայաստան» կանտատ, «Սովետական Հայաստան» սիմֆոնիկ պոեմ, «Ֆեստիվալային վալս», «Թավջութակի սոնատ» և այլն) կոմպոզիտորը ստեղծեց իր լարային կվարտետը, որը հայ կամերային երաժշտության զարգացման գործում նշանակալից եղավ և հեղինակին ճանաչում բերեց աշխարհի շատ երկրներում:

Լայպցիգի կոնսերվատորիայի պրոֆեսոր Շյուտցերը «Կվարտետը» լսելով՝ գրեց. «Նրա երաժշտությունը թարմ է, ինքնատիպ, աչքի է ընկնում հուզական մեծ լարվածությամբ և գրված է պրոֆեսիոնալ մակարդակով»:

Էդվարդ Միրզոյանը երկար տարիներ ի վեր Հայաստանի կոմպոզիտորների միության նախագահն է, Երևանի Կոմիտասի անվան կոնսերվատորիայի պրոֆեսոր, հանրապետության Գերագույն սովետի դեպուտատ:

Այս տարի՝ 1981 թվականին լրացավ նրա ծննդյան 60 տարին և կոմպոզիտորը սովետական երաժշտական արվեստի զարգացման բնագավառում ունեցած մեծ վաստակի համար արժանացավ ՍՍՀՄ ժողովրդական արտիստի պատվավոր կոչման:

Էդվարդ Միրզոյանի «Սոնատ թավջութակի և դաշնամուրի համար»... սովետական երաժշտական արվեստի ակնառու ստեղծագործություններից է... Կարելի է վստահ ասել, որ սովետական կամերային երաժշտությունը հարստացել է նոր, ազանշելի ստեղծագործությամբ, նոր գլուխգործոցով...

ԱՐԱՄ ԽԱՉԱՏՐՅԱՆ

Շատ ուշագրավ, նորարարական ստեղծագործություն է Էդվարդ Միրզոյանի լարային կվարտետը: Այս ստեղծագործության մեջ սոնատների շարքի ավարտվածությունը ձեռք է բերված վարիացիայի միջոցներով: Դա բացառիկ երևույթ է այդ բնագավառում:

Է. ԳԼՈԲԻԼ





# ԳՐԱԴԱՐԱՆԱՎԱՐՈՒՀՈՒ ՕԳՆԱԿԱՆՆԵՐԸ

Նոյեմբերյանի շրջկենտրոնի № 1 միջնակարգ դպրոցի գրադարանում, երկու տասնամյակից ավելի է, ինչ գրքերն աշակերտներին են տրամադրվում առանց ստորագրության, որ նշանակում է գրադարանավարուհու և ընթերցողների միջև գոյություն ունի փոխադարձ վստահություն:

Երբ զանգը դասամիջոց է ազդարարում, 9ա-ի աշակերտուհի Գայանեն իր համադասարանցիներ Սեդա Մաճկալյանի և Լենա Հարությանի հետ վազում են գրադարան: Դպրոցում ուսումնական պարապմունքները բազմահերթ են, շատ դասամիջոցներ 5 րոպեանոց են: Գրադարանավարուհի ընկ. Ռոզան միանգամից չի կարող այդքան կարճ ժամանակամիջոցում գրադարան հաճախած բազմաթիվ աշակերտներին սպասարկել: Գայանեն, Սեդան, Լենան օգնում են գրադարանավարուհի Ռոզային արագ սպասարկելու: Երբեմն



ԼԵՆԱ ՂԱՐԱՔԵՇԻՇՅԱՆ



ԳԱՅԱՆԵ ԳԻՇՅԱՆ

գրադարանի բանալին վստահվում է Գայանեին: Նա կարողանում է ինքնուրույն սպասարկել աշակերտությանը, վայրկենական արագությամբ գտնում է ուզած գիրքը և դնում հաճախորդի առաջ: 1979 թ. մանկան միջազգային տարվա առթիվ սահմանված ամենալավ ընթերցողի մրցանակաբաշխության առաջին կարգի մրցանակը շահեց Գայանեն: Խրախուսանքի արժանացան Սեդան և Լենան:

Սեդան հետաքրքրվում է նաև դպրոցի կոմերիտական և պիոներական աշխատանքներով, իրեն ակտիվ է դրսևորում երեկույթներում, ցերեկույթներում, իր անաչառ ելույթներով հանդես է գալիս կոմերիտական ժողովներում: Նա հիանալի է դրսևորում իրեն նաև դաշտային աշխատանքներում:



ՍԵԴԱ ՄԱՃԿԱԼՅԱՆ

Գրքասերներ Գայանեին, Լենային, Սեդային, Լիանային, Սոնյային, Ֆլորային, Ժաննային, Համիկին և ուրիշներին հետևում է գրքասերների նոր սերունդ՝ 4-րդ և 5-րդ դասարանցիներ Անուշը, Մանուշը, Համիկը, Ալվարդը և ուրիշներ:

Ս. ՋԻԼԻՆԳԱՐՅԱՆ

# ՀԱՅՏՆԱԳՈՐԾՈՒՄ ՄԵԿ ՃԱՅՏՕՎ

Կ. ՄԵԼԻԽԱՆ

Միշան ավարտել էր սովորական, ոչ մասնագիտացված դպրոցի առաջին դասարանը: Ուսուցիչն ավարտել էր սովորական համալսարանի վերջին կուրսը: Նրան դպրոց ուղարկեցին: Որպես ուսուցիչ: Եվ նա երեխաներին տանը լուծելու համար տվեց ոչ այն խնդիրը, որը պետք է տար: Մեկ անհայտով հավասարում: Ոչ ոք խընդիրը չէր լուծել: Բացի Միշայից:

— Դո՞ւ ես լուծել,— հարցրեց ուսուցիչը:

— Բա ո՜նց,— ասաց Միշան, որի հայրիկը մաթեմատիկական բաժնի պետն էր:

— Այդ դեպքում բացատրիր, թե ինչպես լուծեցիր,— խնդրեց խորամանկ ուսուցիչը:

— Ես քաշվում եմ,— բացատրեց Միշան: — Խնդիրները ես կարողանում եմ լուծել միայն ընտանեկան պայմաններում: Ուրիշների ներկայությամբ ես ծայր աստիճանի ինքնամփոփ եմ, քչախոս, համարյա ուրբաթախոս: Ես կոմպլեքս ունեմ...

— Բավական է, Միշա,— խնդրեց ուսուցիչը: — Բոլորին ես սովորական առաջադրանք կտամ, իսկ քեզ հատուկ՝ կոմպլեքսային խնդիր:

— Արտասովոր դպրոց է... — ասաց հայրիկը, ձեռնամուխ լինելով հինգերորդ դասարանի համար նախատեսված խնդրի լուծմանը:

— Դո՞ւ ես լուծել,— հարցրեց ուսուցիչը հաջորդ օրը:

— Բա ո՜նց,— ասաց Միշան և կարմրատակեց:

— Այդ դեպքում բացատրիր, թե ինչպես լուծեցիր աններբանկատորեն խնդրեց ուսուցիչը:

— Ես ենթագիտակցաբար եմ լուծել,— բացատրեց Միշան:

— Ախ, ենթագիտակցաբա՞ր,— ասաց ուսուցիչը և Միշային գիտակցաբար ավելի բարդ առաջադրանք տվեց:

— Արտասովոր խնդիրներ են, հատկապես սա,— ասաց հայրիկը,— դիմորդների համար նախատեսված խնդրագրքում ստուգելով պատասխանը:

— Դո՞ւ ես լուծել,— հարցրեց ուսուցիչը,— չնայելով Միշայի տետրին:

• — Yes,— պատասխանեց Միշան անգլերեն:

Ուսուցիչը հանեց ծոցատետրը և քառասուն րոպե թելադրում էր այն խնդրի պայմանները, որը համալսարանում ոչ մի ուսանող չէր լուծել:

— Հիմա ուսուցիչներն արտասովոր են, հատկապես Միշայինը,— ասաց հայրիկը, ժապավենը դնելով էլեկտրոնային հաշվիչ մեքենայի մեջ:

— Դո՞ւ ես լուծել,— հարցրեց ուսուցիչը, պատուհանից դուրս նայելով:

— Ես,— անկեղծորեն պատասխանեց Միշան:

— Հիմա կստուգենք,— ասաց ուսուցիչը և զանգահարեց Միշայի հայրիկին: — Դո՞ւք եք լուծել:

— Ես,— անկեղծորեն պատասխանեց հայրիկը:

Ուսուցիչը գրենական պիտույքների խանութ գնաց, գնեց ամենահաստ տետրը և ամբողջ գիշեր մինչև լուսաբաց գրում էր նոր խնդրի պայմանները: Այսինքն՝ այն ամենը, ինչ գլուխը գալիս էր: Գրում էր անսահմանության ձգտող սահմանային մեծություններ, «e»-ն բարձրացրած «e» աստիճան, բարձրացրած «X» աստիճան և քթի տակ ծիծաղում էր:

Այս անգամ հայրիկը ոչինչ չասաց. խնդրի վերնագիրը սուսուփուս մտցրեց բաժնի տարեկան պլանի մեջ, որ շուտով գիտահետազոտական ինստիտուտ դարձավ: Հայրիկը ակադեմիկոս դարձավ: Ուսուցիչն էլ ակադեմիկոս դարձավ:

Իսկ ի՞նչ դարձավ Միշան... Ըստ էության, հենց սա էլ մեկ անհայտով հավասարում է:

Գրում եմ ու մտածում՝ իզուր չե՞մ գրում: Ուզում եմ ձեզ հետ, երեխաներ, կատակել կամ սրամտել, բայց հանկարծ ու զուր լինի: Հանկարծ ու դուք զուրկ լինեք հումորի զգացումից... Եվ որոշեցի ձեզ հետ քննարկել այս հարցը: Դրա համար գնացի հարևանիս տուն և նրա տղային՝ Կոլյային, որ հինգերորդ




դասարանցի է, հարցրի.

— Կոլյա, դու հումորի զգացում ունե՞ս:

— Ո՞նց թե չունեմ,— ասաց նա,— ինչքան ասես:

— Իսկ դու ի՞նչ գիտես, որ ունես:

— Հը՞մ... դրա համար ինձ ութ անգամ դասարանից դուրս են հանել:

Ես ընկա ավելի մեծ տարակուսանքների մեջ: Այդ ինչպիսի՞ հումորի զգացում է, որի համար աշակերտին դասարանից հանում են: Եվ հասկացա, որ ձեզանից շատերը, երեխաներ, հումորի հարցում թյուրիմացության մեջ են: Այսպես, եթե մեկի աթոռին սոսինձ եք քսում, կամ թանաքամանի մեջ ճանճ խոթում, ձեր կարծիքով սրամիտ բան եք արած լինում: Իսկ ուսուցչի կարծիքով դա հիմարու-

# ՀՈՒՄՈՐԻ ԶԳԱՑՈՒՄ ՈՒՆԵ՞Ս

թյուն է: Եվ ես համամիտ եմ նրան:

Մի առավոտ ես մտա ֆոտո խանութ: Այնտեղ կար մի արկղ սև թևնոցներով, անշուշտ գիտեք, թե ինչի համար, որպեսզի ժապավենը գնելու դեպքում, տեղնուտեղը տեղադրեք ապարատի մեջ: Այդ արկղից քիչ հեռու մի տղա էր պտտվում, և հետաքրքրությամբ հետևում էր յուրաքանչյուրին, ով մոտենում էր արկղին: Ես ոչ տարա, ոչ բերի, հարցրի այդ տղային.

— Ինչո՞ւ ես այդպես հետաքրքրությամբ նայում արկղին:

— Սը՛ս... աչքով արավ նա ինձ,— ես արկղի մեջ մկան թակարդ եմ գցել: Հիմա այն մեկնումեկին հափ կանի...

— Ինչո՞ւ ես այդպիսի բան արել:

— Կատակի համար:

Նա չէր հասկանում, որ դա չար կատակ էր: Ահա թե ինչ, երեխաներ, կատակը նախ և առաջ չար չպետք է լինի: Հումորի զգացումը բարի զգացում է: Լավ հիշեցեք այս: Կատակեք ինչքան ուզում եք, ծիծաղեք կարեցածի չափ, բայց աշխատեք, որ ձեր կատակն ու ծիծաղը ուրիշին ցավ չպատճառեն:

Ես գիտեմ, որ դուք կարող եք և ընդունակ եք ուրախանալ այնպես, որ անգամ մեծերը ձեզ նախանձեն: Ինձ վիճակվել է ներկա լինել դըպրոցականների հնարամիտների և սրամիտների ակումբի հավաքույթներին, և ծիծաղից ջուր եմ դառել ձեր հասակակիցների սրամիտ պատասխանների վրա: Հիշում եմ, թե ինչպես մի ջոկատ մյուսին հարց տըվեց, թե՝ ինչո՞ւ փիղը չի թռչում, և մի շեկլիկ աղջիկ դուրս թռավ տեղից, մոտեցավ միկրոֆոնին և վրա տվեց՝ «Փղերը չեն թռչում, որովհետև խըղճում են պիոներներին, մտածելով, թե նրանք իրենց համար բույն ինչպե՞ս կշինեն»: Դահլիճում բոլորը հռհռացին, ես էլ նրանց հետ: Հետո մյուս ջոկատը հարցրեց. «Իսկ գետաձիու աչքերն ինչո՞ւ են կարմիր»: Եվ մեկը պատասխանեց՝ «Գետաձիու աչքերը կարմիր են նրա համար, որ կարողանա թաքնվել պոմիդորի մարգերում»: Եվ դահլիճում նորից քրքիջ պայթեց: Նշանակում է, դուք հումորի զգացում, իրոք, ունեք: Նշանակում է, կարող եք: Նշանակում է, ընկերներին ծիծաղեցնելու համար չպետք է անպայման ինչքան ուժ ունես պայուսակով խփես աղջկա մեջքին և գոռաս, թե ճանճ ես բռնում: Նշանակում է, պետք չէ փորը բռնած հռհռալ, երբ ծեր կինը մետրոյի պտուտակադռան մեջ խճճվում է, երբ մեկը սայթաքում է, և ձեռքից ընկնում կոտըրվում է մածունի բանկան:

Անկեղծ ասած, ես երբեք չեմ կասկածել, որ դուք բոլորդ ունեք հումորի զգացում: Պարզապես ուզեցի մի ավելորդ անգամ հիշեցնել ձեզ, որ ավելի լավ է օգտվելով ձեր ունեցած հումորի զգացումից, ավելացնեք դրան նույնքան բարիություն ու չափի զգացում: Եվ այն ժամանակ բոլորը կուրախանան, թե՛ նա, ով կատակում է, թե՛ նա, ում հասցեագրվում է այդ կատակը:

*ՅԱՐՈՍԼԱՎ ԽԱՐԵՉԿՈ*




# 1. Հայկական կարմիրը

*[illegible] լատիներեն. ծագում [illegible] արաբական կիրմիզ բառից.*

*Սովետական մեծ հանրագիտարան.*

Կենդանական ծագում ունեցող կարմիր ներկը միջազգային պաշտոնական գրականության մեջ կոչվում է «կարմին»: Ենթադրվում է, թե այն ծագում է արաբական «կիրմիզ»-ից: Բայց արաբական աղբյուրներն անգամ այլ բան են ասում: Աբու-Իսահակ Իստահրին 10-րդ դարում գրել է, որ հիմնական աղբյուրը, որտեղից ստացվում է կիրմիզը, եղել է Հայաստանը, հատկապես Արարատի նահանգը: Այդտեղից այն արտահանվել է մինչև Հընդկաստան: Իսկ Ֆիրուզբադին (14-րդ դար) հաստատում է, որ «կիրմիզը հայկական ներկ է, պատրաստում են որդի հյութից»: Հետևաբար, բնական է ենթադրել, որ արաբները ներկի հետ միասին ներմուծել են նաև նրա պարսկահայկական անունը: Արաբներից էլ վաղ ներկի մասին գիտեին ասորացիք և հռոմեացիք: Գուցե այս բառը արաբական է համարվել այն պատճառով, որ արևմտյան Եվրոպա է մտել արաբների միջոցով: Անհերքելի է այն, որ զարմանալի կերպով որդան կարմիրի պատմությունը հյուսված է մեր ժողովրդի անցյալի հետ: Հայերի վերջին հազարամյակների պատմության պարանի թելերից մեկը կարմիր է ներկված, ոչ թե սովորականի պես հայկական արյունով, այլ փոքրիկ, արևից խուսափող որդանի հյութով: Կայուն ու պայծառ կարմիր ներկի շնորհիվ,

այդ համեստ միջատը թերևս ավելի արժանի է գովքի ու պատմության մեջ հիշատակվելու, քան շատ ու շատ աշխարհակալներ, թագավորներ և իշխաններ, չնայած, նրանք էլ մեր հողն ու ջուրը շռայլորեն կարմիր են ներկել, բայց արյան ալ-կարմիր ներկով:

Այո, հնուց, շատ հնուց է գալիս Հայաստանի հետ այդքան սերտ հյուսված ներկի պատմությունը:

Եթե հավատանք ավետարանին, ապա Նոյի ժառանգներն են եղել որդանի առաջին օգտագործողները:

Ասորական թագավորներին էլ են մեծ հաճույք պատճառել Արարատ աշխարհից որպես ռազմավար հափշտակած կարմրաներկ հյուսվածքները և նրանք այդ մասին ժայռերի կրծքին սեպագրեր են թողել: Պարսիկները Հռոմի աշխարհակալ Ավրելիանոսի սիրտը հայկական կարմիր հյուսվածքներով են շահել: Բայց երևի կարմիրը միայն ավարի ձևով չէ, որ հայտնվել է օտարության մեջ, նրա համբավը, օրինակ, կարող էր և Բաբելոն հասնել Հերոդոտոսի նկարագրությամբ:

Հորդառատ և արագընթաց Եփրատ գետի ակունքների մոտ, ուռենու ճյուղերից հյուսում էին նավերի կմախքը, դրսից պատում կաշվով, տալիս դրանց կլոր վահանի ձև: Նավը լցնում էին հարդով, բարձում Հայաստանի խորքերից քարավաններով բերած ապրանքներ, նավում տեղավորվում էին նավագնաց-առևտրականները և մեկ կամ մի քանի գրաստ: Առանց կողմնակի ուժի, միայն գետի հոսանքի շնորհիվ նավերը սրընթաց հասնում էին Բաբելոն: Այդտեղ ապրանքները, նավի կմախքը և հարդը աճուրդի էին հանվում, իսկ կաշին բարձելով գրաստներին, առևտրականները բռնում էին դարձի ճամփան:

Այսօր էլ երևի հնարավոր է հաշվել այն արագությունը, որով նավերը սլանում էին դեպի Բաբելոն, քանզի այդ արագությունը հավասար պիտի լիներ լեռնային Եփրատ գետի հոսանքի արագությանը:

Հայաստանով էր անցնում նաև քարավանային այն ճանապարհը, որը կոչվել է Չինական կամ Մետաքսե ուղի: Դեռևս մեր թվարկությունից երկու դար առաջ, մինչև 16-րդ դարը դա մնաց բանուկ ճանապարհ և կովախնձոր էր Հռոմի, Պարթևստանի, արաբների համար: Այդ ճանապարհով բերված մետաքսի թելերից հմուտ հայ վարպետները գործել են գունագեղ, փառավորված այն գոտիները, որոնք արտահանվել են արևելյան շուկաները և վաճառվել շատ բարձր գնով:

## 2. Կարմիր մորթիներ

*«Ալաններն մոտ հարգի է կարմիր մորթ...»*

*Մովսես Խորենացի, V դար, «Պատմություն Հայոց»*

Հեքիաթներում է, որ թագավորները, թագաժառանգները, դշխուհիները սիրահարվում և ամուսնանում են իրենց ցանկությամբ: Իրականում նրանց ամուսնացնում էին ծեր դիվանագետները և քաղաքագետները, ամուսնության թեկնածուն ընտրելով սառը դատողությամբ, ելնելով անձնական կամ էլ պետական շահերից:

Իհարկե, ամուսնության հեքիաթային պատումները շատ ավելի հմայիչ են, ինչպիսին էր, օրինակ, հայոց Արտաշես թագավորի ամուսնությունը ալանաց օրիորդ Սաթենիկի հետ, որի մասին

անհիշելի ժամանակների խորքից մեզ են հասել գողթան վիպասանների ասքերը: Պատերազմ էր երկու քաջ աղեղնավոր ազգերի միջև: Ալանները, հաղթահարելով անանցելի կովկասյան լեռները, հեղեղի պես իրենց ճանապարհին



Նկ. ՀՐԱՅՐ [illegible]

ամեն ինչ սրբելով, խուժել էին հայոց աշխարհը, ապա նահանջել և ապաստանել Քուռ գետի հյուսիսային ափին: Արտաշեսն էլ հայկական զորքերով բռնել էր գետի հարավային ափը:

Այդ մասին վրացական «Քարթլիի թագավորների կյանքը» գրքում, որը հանրահայտ է «Քարթլիս ցխովրեբա» անունով, ասվում է. «Այնժամ Սումբաթ Բիվրիտիանը զորակոչեց հայկական բանակը և հայերը շուտափույթ հավաքվելով սկսեցին հետապնդել քարթլեցիներին ու նրանց դաշնակիցներին:

Հյուսիսայինները լրիվ անցնելով Քուռը, մտան Կամբեչոանի, ճամբար խփեցին Իորիի մոտ և սկսեցին բաժանել ավարն ու գերիներին: Վրա հասած Սումբաթը սուրհանդակ հղեց նրանց՝ հետևյալը հաղորդելով.

— Հայաստանից ձեր առած ավարը՝ անասունները, ոսկին, արծաթը և հյուսվածքեղենը նվիրում եմ ձեզ, ես ներում եմ ձեզ թափած արյան համար, հետագայում էլ վրեժխնդիր չեմ լինի: Վերադարձրեք միայն գերած մեր մարդկանց ու բաժանվենք խաղաղությամբ և ամենայն լիությամբ»:

Սակայն ոսոխը չունկնդրեց, և պատերազմը ավելի թեժացավ...

Խորենացին գրում է, որ ալանների պատանի թագաժառանգը, հարբած պայքարի և սխրագործությունների ծարավով, անխոհեմաբար առաջ անցավ և գերվեց: Նրան տարան Արտաշեսի ռազմական ճամբարը: Արքան թանկագին գերուն պահպանում էր իր աչքի լույսի պես և միտք չուներ ետ վերադարձնել, բայց գետի հակառակ ափին մի բարձրության վրա երևում է պատանու քույրը, ալանաց օրիորդը՝ Սաթենիկը, որը ձայն է տալիս հայոց արքային:

«Քեզ եմ ասում, քաջ այր Արտաշես, որ հաղթեցիր ալանների քաջ ազգին...»

Նա արքային հիշեցնում է քաջերին վայել այն առաքինությունները, որոնց շնորհիվ վերջ է դրվում թշնամությանը դյուցազունների մեջ: Թագավորը գերվում է կույսի գեղեցկությամբ, ձայնով և իմաստությամբ: Պատրաստ էր տալ ամեն ինչ, միայն, թե տիրանար նրան: Այդ խնդրով ալանաց թագավորի մոտ է գնում հայոց սպարապետ Սմբատը: Ալանների թագավորը մերժում է հայոց թագավորի խնդրանքը: Այնժամ՝

«Հեծավ արի Արտաշես արքան իր գեղեցիկ սև ձին...»

Պատռելով Քուռի կոհակները, արծվի պես սրընթաց հայտնվեց գետի հակառակ ափին ու իրենից խույս տվող կույսին որսաց՝ ոսկե շիկափոկ պարանով, որը շատ ցավեցրեց փափուկ օրիորդի մեջքը:

Իրականում հայերը, ըստ Խորենացի պատմահոր, չքնաղ օրիորդի համար վճարել են կարմիր ներկած մորթով, որը շատ հարգի էր ալանաց մոտ:

*(շարունակելի)*

# ԺՊԻՏՆԵՐ

## Ո՞Վ ԵՄ ԵՍ

Դպրոցից տուն էի վերադառնում: Մեկ էլ մի անցորդ կանգնեցրեց թե.

— Տղա ջան, ինչպե՞ս գտնեմ Վորոշիլովի փողոցը:

Ես ապշեցի, սակայն չփորձեցի անծանոթին ասել, թե աղջիկ եմ. չցանկացա: Բացատրեցի ինչպես գնալ և շարունակեցի ճանապարհս:

Ճաշարանում ճաշում էի: Մոտեցավ մի կին.

— Ա՛յ տղա, այստեղ ազա՞տ է:

Շփոթվեցի, չիմացա ինչ անել:

Եվ արդեն վերջնականապես ինձ կորցրի, երբ հեռախոսի խցիկի մոտ մի տղա, որ մեր դպրոցից էր, ինձ դիմեց թե.

— Ապե՛ր, երկու կոպեկանոց ունե՞ս:

«Այ քեզ բա՛ն,— մտածեցի,— մի՞թե ես նորաձևության զոհ եմ»:

ՆԱՏԱՇԱ ԳԱՆԻԽԻՆԱ

*Դնեպրոպետրովսկի մարզ, ք. Ժոլտիե Վոդի*

# ՏԵՂԵԿԱԲԵՐ ՌՈԲՈՏԸ

Մեր ժամանակներում ռոբոտներին սովորեցնում են քայլել, տեսնել, զգալ: Անգլիական «Վերստլենդ» ֆիրմայի ինժեներները ռոբոտին սովորեցրել են թռչել: Ստեղծված է ուղղաթիռ՝ ծրագրված ժամանակով և թռիչքի ուղղությամբ: Այն օժտված է ֆոտոխցիկով և հեռուստատեսային սարքավորումով: Ուղղաթիռն առաջին անգամ փորձարկեցին բնության և շրջապատող միջավայրի պաշտպանության մասնագետները՝ գործարանների ծխի տարածումն ուսումնասիրելիս: Օգտագործեցին այն նաև անտառապահները՝ հրդեհների օջախները որոնելիս: Գյուտարարները առաջարկում են իրենց այս թռչող ռոբոտն օգտագործել նաև խոշոր սպորտային մրցումներից ռեպորտաժներ նկարահանելու համար: Տարածական ղեկավարումը տեղեկաբեր փոքրիկ ուղղաթիռին թույլ կտա վերից հետևել հեծանվորդներին, մարաթոնիստներին, թիավարներին: Այն կկարողանա նաև հարմարվել սպորտային նավերին, ավտոմեքենաներին, պլաներներին (ճախրասավառնակներին) և նկարահանումների մի ամբողջ շարք հաղորդել, այսպես ասած, թռչնի թռիչքի բարձրությունից:



Նյու-Յորքում դեկտեմբերյան մի գիշեր, նա տուն էր վերադառնում, երբ խավարի միջից լըսվեց. «Մի՛ստր Լեննոն»: Ջոնը շրջվեց: Ճայթեց կրակոցը, հետո երկրորդը, երրորդը...

Ջոն Լեննոնը ծնվել է 1940 թվականին, անգլիական Լիվերպուլ քաղաքում: Դպրոցական նրա ստեղծագործությունները եղել են բանաստեղծություններ, ակներ, պամֆլետներ, բանջո է նվագել: Եվ այս ամենը 1955 թվականին հանգեցրել են «Քվորի մեն» անսամբլի ստեղծմանը:

Ջոնը ձգտում էր երաժըշտական մի նոր ոճ ստեղծել, ուր պետք է միահյուսվեին ժամանակակից «ռոկի» ռիթմերն ու ժողովրդական բալլադների նուրբ մեղեդայնությունը:

Նա անընդհատ որոնում էր այդ ոճը, որը հետագայում աշխարհի բոլոր երաժիշտները անվանեցին մի կարճ բառով՝ բիթ:

Որոնումների ճանապարհին Լեննոնին միացան Փոլ Մաքքարթնին (բաս կիթառ), Ջորջ Հարիսոնը (սոլո կիթառ), և ավելի ուշ՝ Ռինգո Սթարը (Ռիչարդ Սթարքի— հարվածային գործիքներ): Ահա այսպես ըստեղծվեց «Բիթլզ» անսամբլը: Այն սկսեց ամերիկյան «ռոկի» նմանակումից, սակայն արդեն վաղ շրջանի երգերում լսելի էր նրանց ուրույն ստեղծագործական ոճը: Նրանք նվագում էին հարազատ Լիվերպուլի բարերում և հաճախ մեկնում Գերմանիա, ուր հիմնականում հանդես էին գալիս Համբուրգում: Այստեղ էլ նրանց նկատեց իմպրեսարիո Բրայան Էփսթայնը և «լիվերպուլցի քառյակը մեկ օրում դարձավ հանրահանաչ»: «Բիթլ ն ե ր ի » կենսահաստատ երաժըշտությունը նվաճեց աշխարհը: Նրանց յուրաքանչյուր ձայնապնակ նշանակալից երևույթ էր երաժշտական աշխարհում, իսկ յուրաքանչյուր ալբոմ իր երաժըշտական արժանիքներով գերազանցում էր նախորդին:

«Բիթլզի» ցնցող հաջողություններից հետո, 60-ական թվականների վերջերին, Լոնդոնը բրիտանական և ամերիկյան ռոկ-երաժշտության ասպարեզում նոր որոնումների ու էքսպերիմենտների կենտրոն դարձավ: Առջևում, ինչպես միշտ, «Բիթլները» էին: Նրանց «Ռետինե հոգի» (1965) ալբոմը մի ընդհանուր միասնական երգաշար էր, իսկ 1967 թ. նըրանց նոր փորձերի արդյունքը դարձավ «Սերժանտ Փեփերի միայնակ սրտերի ակումբի նվագախումբը» հռաշալի ալբոմը: Դա մարդկային երևակայության իրական տոնահանդես էր: Այնպիսի երգեր, ինչպիսիք են «Բարի լույսը», «Երբ ես վաթսունչորս կդառնամ», «Հանուն միստր Քայթի», «Քո մեջ, բայց առանց քեզ», «Կյանքի մեկ օրը» և այլն, իսկական նորույթ էին իրենց անակնկալ ու թարմ գործիքավորումով: «Բիթըլների» երաժշտական ժառանգությունը հսկայական է. նրանք անջնջելի հետք են թողել պոպերաժշտության զարգացման պատմության մեջ:

Այստեղ մի պահ կանգ առնենք:

Լեննոնը ոչ միայն խըմբի մտավոր կենտրոնն էր ու ամենաեռանդուն անդամը, այլև ուղղություն էր տալիս անսամբլի նորարարական ոգուն: Նրա «Օգնեցեք», «Մարդը ոչ մի տեղից», և այլ ստեղծագործություններ, էլեկտրոնիկայով փորձարկումները, «Սերժանտ Փեփերի միայնակ սրտերի ակումբի նվագա-



խումբը» ձայնասկավառակի նրա սցենարը քանդում էին ավանդույթի շրջանակները: Լեննոնի անհանգիստ, պրպտող, սուր միտքը «Բիթլզի» երգացանկին տալիս էին բողոքի, հակաբուրժուական, հակապատերազմական բնույթ: Օլսթերի իրադարձություն ն ե ր ը, ԱՄՆ-ում քաղբանտարկյալների ճակատագիրը, սևամորթների քաղաքացիական իրավունքների համար շարժումը և բազմաթիվ այլ պրոբլեմներ, ի դեմս Լեննոնի գտան համառ ու անկոտրում մեկնաբանի:

«Բիթլզների» բաժանումից հետո, իր կնոջ՝ Յոկո Օնոյի հետ Ջոնը ստեղծում է նոր խումբ և իրագործում իր առավել արմատական մտահղացումները՝ երաժշտական ու քաղաքական: Ձայնագրում է այնպիսի երգեր, ինչպիսիք են «Աշխարհին մեկ հնարավորություն տվեք», «Ամբողջ իշխանությունը՝ ժողովրդին», «Բանվոր դասակարգի հերոսը» և այլն: 70-ականների կեսերին Ջոնը, զգալով, որ չի կարող այլևս իր ունկնդրին նոր բան ասել, գերադասեց ազնվորեն լռել, չիջնել «հերթապահ ձայնասկավառակներ» բաց թողնողի մակարդակին: Լեննոնը լռությունը խզեց իր զոհվելու նախաշեմին՝ 1980 թվականին, երբ լույս տեսավ նրա «Կրկնակի ֆանտազիա» ձայնասկավառակը: Այն լուսավոր է, լի լավատեսությամբ ու հավատով ապագայի հանդեպ:

«Ասես ամեն ինչ նորից է սկսվում»,— այսպես է կոչվում ձայնասկավառակի առաջնային երգը: Այդտեղ Լեննոնն, ասես, վերածնվել էր: Ծնվել... որպեսզի սպանվի:

Արևմտյան մամուլը Ջոն Լեննոնի սպանությանը շատ էջեր նվիրեց: Համարյա բոլորը անարգում են մարդասպանին՝ կիսախելագար ձախողակին: Բայց ոչ ոք չի մեղադրում հասարակությանը, որ նույնիսկ խելագարը կարող է ատրճանակ կամ հրացան գնել զենքի ցանկացած կրպակից:

Լեննոնի սպանությունից մեկ շաբաթ առաջ ամերիկացի բժիշկ Մայքլ Հելբերստամը հեռուստատեսությամբ կոչ արեց սահմանափակել հրազենի վաճառքը (որոշ նահանգներում հրազենը ազատ վաճառում են նույնիսկ անչափահասներին): «Հիմա՛ գործեք,— ասում էր բժիշկը,— մի՛ սպասեք մինչև ձեր ազգականներից մեկնումեկը ատրճանակով գազազած խելագարի զոհը դառնա...»

Եվ ի՞նչ: Հելբերստամը ընկավ բանդիտական գնդակից՝ Լեննոնի սպանությունից երեք օր առաջ...





# Մարդը և կենդանիները

## ԱՄԵՆԱԹՈՒՆԱՎՈՐ ՕՁԸ

Ավստրալիական մանր-թեփուկավոր պարադեմանցյան միկրոլեպտոդաս օձը, ինչպես պարզվել է բոլորովին վերջերս, ամենաթունավոր օձն է աշխարհում: Նրա թույնը երեք հարյուր անգամ ավելի զորեղ է շառաչող օձի և քսան անգամ՝ կոբրայի թույնից: Այս օձի վտանգավորությունը երկար ժամանակ թերագնահատում էին այն պարզ պատճառով, որ նա վերջին հարյուր տարվա ընթացքում շատ հազվադեպ է երևացել մարդկանց տեսադաշտում: Առաջին մի քանի օձերը գիտնականների լաբորատորիաներում հայտնըվեցին միայն 1975 թվականին: Մանրաթեփուկ օձի թույնը ոչ միայն ամենազորեղն է, այլև այդ սողունը իր թույնը կուտակում է այնպիսի հսկայական քանակով, որպիսին չի հավաքում ոչ մի ուրիշ օձ: Որոշ մանրաթեփուկ օձերից «կթել» են մինչև 110 միլիգրամ թույն, այն դեպքում, երբ միջին հաշվով օձը տալիս է մինչև 45 միլիգրամ: Համեմատության համար ասենք, որ խիստ թունավոր օձերի թույնը կազմում է ընդամենը մեկ միլիգրամ:

## ՁԿՆԵՐԸ ԲՈՒԺՈՒՄ ԵՆ

Ամերիկյան հոգեբան Բեն Լևինսոնը հրապարակեց իր երկարամյա դիտումների արդյունքները: Նա պնդում է, որ երեխաների որոշ հոգեկան խանգարումները հաջողվել է բուժել ոչ թե դեղորայքով, այլ... ակվարիումային ձկնիկների օգնությամբ: Լևինսոնի մեթոդն արտահայտվում է նրանով, որ նա հիվանդ երեխային աստիճանաբար ներարկում է ձկնիկներին խնամելու ցանկություն, երբ երեխան սկսում է հետաքրքրությամբ դիտել նրանց: Ձկնիկների սահուն շարժումները հանգստացնում են երեխային, իսկ ակվարիումի ողջ պատկերը՝ ջրաբույսերով, գույնզգույն խճաքարերով, մանրակերտ քարայրներով, զարգացնում է մանկական երևակայությունը:

## ԻՆՉՊԵՍ ԵՆ ՋՈՒՐ ԽՄՈՒՄ ԾԻԾԵՌՆԱԿՆԵՐԸ

Մեզնից ամեն մեկը հետաքրքրությամբ դիտել է, թե ինչպես են ծիծեռնակները սահուն թռիչքով անցնում ջրերի մակերեսի վրայով: Բայց մինչև այժմ նույնիսկ մասնագետ-թռչնաբանները անգամ վստահորեն չգիտեին, թե ինչ նպատակով է թռչունը այդպես մոտիկից սլանում ջրի մակերեսով. արդյոք ջրի վրա թռչող միջատնե՞ր է որսում, ջրի մակերևույթից իր համար սնո՞ւնդ է հայթայթում, թե՞ գուցե ջուր է խմում:

Անգլիացի փորձառու լուսանկարիչ Ստիվեն Դալտոնը կատարել է առաջին ակնթարթային լուսանկարները, որոնցից պարզ է դարձել, որ ծիծեռնակները ջրի վրայով սըրնթաց թռչելու ընթացքում հագեցնում են իրենց ծարավը: Ավտոմատ կամերան տեղադրելով ջրի ափին՝ նա լուսանկարչական մեքենան միացրել է ֆոտոէլեմենտին, որն անմիջապես գործել է՝ հենց որ ջրի մակերեսով թռչող ծիծեռնակները հայտնվել են օբյեկտիվի տեսադաշտում: Հաջող լուսանկարներ ստացվել են երկու ամսվա համառ աշխատանքից հետո:



ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

Հասցեն՝ 375015, Երևան 15, Կարմիր բանակի փողոց 15։
Հեռախոսներ՝ 56-32-72, 58-08-38, 56-14-96։

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

## № 11 • ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ • 1981

Ս. ԶԱՔԱՐՅԱՆ— Ամառը Քասախի ձորում . . . 3
Ա. ԱՐԱԶՅԱՆ— Ես հավարած եմ . . . . . 4
Պ. ԽԱՉԱՏՐՅԱՆ— Բանաստեղծություններ . . . 10
Լ. ՀԱԽՎԵՐԴՅԱՆ— Զրույցներ լեզվի մասին . . . 12
Վ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ— Պատմական հուշարձանների նոր ճակատագիրը . . . . . 14
Զ. ԽԱԼԱՓՅԱՆ— Ջիու մասին . . . . . 16
Մ. ՈՍԿԱՆՅԱՆ— Էստաֆետ-ալբոմը . . . . 22
Ս. ԱՐՇԱԿՈՒՆԻ— Մեր քաջ Քուչոն . . . . 24
Պատրաստիր ինքդ . . . . . . . . 25
Ա. ԱՎԱԳՅԱՆ— Տերևաթափ. Ձմեռնամուտ . . . 26
Մ. ՀԱԿՈԲՅԱՆ— Ուղտի պարը կամուրջի վրա է բռնում . . . . . . . . . . . 26
Պատերազմ մուտններին . . . . . . 29
Գիտե՞ք որ . . . . . . . . 29, 41
«Իմ հայրիկը» . . . . . . . . 30
Մեր հյուրը — Էդվարդ Միրզոյան . . . . . 32
Ս. ՉԻԼԻՆԳԱՐՅԱՆ—Գրադարանավարումնու օգնականները . . . . . . . . 34
Կ. ՄԵԼԻԽԱՆ— Հավասարում մեկ անհայտով . . 35
ՅԱ. ԽԱՐԵՉԿՈ— Դու հումորի զգացում ունե՞ս . . 36
Վ. ԽԱՉՈՅԱՆ— Կորած գաղտնիք . . . . . 38
Ժպիտներ . . . . . . . . . 41
Ջոն Լենոն . . . . . . . . . 42
Մենք և կենդանիները . . . . . . . 45
Ժամանց . . . . . . . . . . 47

Շապիկի առաջին էջին՝ «ՀԱՅԿ ՆԱՀԱՊԵՏ», գործ՝ Կ. ՆՈՒՐԻՋԱՆՅԱՆԻ

Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ
Խմբագրական կոլեգիա՝ ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատ. քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒՍԵՓՅԱՆ Ռ., ՄԻԼԻԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ.

Գեղ. խմբագիր՝ Ա. ԿԻԼԻԿՅԱՆ
Տեխ. խմբագիր՝ Հ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ
Վերստուգող սրբագրիչ՝ Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Հանձնված է արտադրության 28.08.81 թ.։ Ստորագրված է տպագրության 4.12.1981 թ.։ ՎՖ 11819։ Թուղթ օֆսեթ, 70×100 1/16։ Տառատեսակ՝ Նորք։ Օֆսեթ տպագրություն, 3,9 պայմ. մամ., 3,1 հրատ. մամ.։ Տպաքանակ՝ 61160։ Պատ. 1991։ Գինը՝ 15 կ.։

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան, Օրջոնիկիձեի պող. № 2։
Типография Издательства ЦК КП Армении, Ереван, пр. Орджоникидзе, 2.

# ԺԱՄԱՆՑ

# ԽԱՉԲԱՌ

## «ՆՇԱՆԱՎՈՐ ՄԱՐԴԻԿ»



**ՈՒՂՂԱՀԱՅԱՑ**

1. Հայ բեմի մեծատաղանդ դերասանուհի: 2. Չեխ գրող, «Քաջ զինվոր Շվեյկի արկածները» գրքի հեղինակ: 3. 20-րդ դարի խոշորագույն նկարիչ: 4. Ֆրանսիացի նշանավոր նկարիչ, իմպրեսիոնիստ: 5. Լեհ կոմպոզիտոր, որի մասին Շումանն ասել է. «Գլխարկները հանեք, պարոնայք, ձեր առջև հանճար է կանգնած»: 6. Ռուս գիտնական, քիմիկոս: 9. Հայ բեմի մեծ վարպետ: 13. Ռուս մեծ գիտնական: 14. Հայ պատմաբան: 16. 1854—55 թ.թ. Սևաստոպոլի պաշտպանության կազմակերպիչը, անվանի ծովակալ: 17. Գերմանացի ֆիզիկոս, որի հայտնագործած ճառագայթները մեծ կիրառություն ունեն ֆիզիկայի, քիմիայի, բժշկության և այլ բնագավառներում: 22. Սովետական շախմատիստուհի: 23. Ծովագնաց, որը հայտնագործեց նոր աշխարհամաս: 25. Հայ անվանի դերասան-ողբերգակ: 28. Հայ ծովակալ: 29. Անտիկ շրջանի քանդակագործ: 30. Գերմանացի կոմպոզիտոր-դիրիժոր: 32. Ֆրանսիացի գրող:

**ՀՈՐԻԶՈՆԱԿԱՆ**

7. Ռուս հեղափոխական, գյուտարար: 8. Գերմանացի հռչակավոր կոմպոզիտոր: 10. Ֆրանսիացի կինոդերասան: 11. Իտալացի մեծ կոմպոզիտոր: 12. Հայ մեծանուն բանաստեղծ: 15. Անգլիացի հանճարեղ ֆիզիկոս և մաթեմատիկոս: 18. Արկտիկան ուսումնասիրող բևեռագետ, անվանի ճանապարհորդ, որը եղել է Հայաստանում: 19. Վերածննդի շրջանի իտալացի մեծ նկարիչ: 20. Գրող, «Խաչակիրներ» վեպի հեղինակը: 21. Շախմատիստ, աշխարհի 1886—1894 թթ. չեմպիոն: 24. Քաղաքացիական կռիվների լեգենդար հերոս: 26. Գրող, որին Մ. Գորկին անվանել է «Պրոլետարական գրականության նախաձեռնողը Ամերիկայում»: 27. 20-րդ դարի նշանավոր հայ նկարիչ: 31. Ռուս գրող, քաղաքացիական կռիվների մասնակից: 33. Ֆրանսիացի ֆիզիկոս, մաթեմատիկոս, որի անունով է կոչվում էլեկտրադինամիկայի օրենքներից մեկը: 34. Սովետահայ գրող: 35. Ռուս քանդակագործ, լենինյան մրցանակի դափնեկիր: 36. Հայազգի սովետական նշանավոր կին գրող:

